## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### «ՄԵՂՎԻ ԿԱԹ»

*Չեխոսլովակիայում որպես արդյունավետ բուժման միջոց կիրառվում է, այսպես կոչված, «մեղվի կաթը»։ Այն ավելացնում է հեմոգլոբինի և արյան կարմիր գնդիկների թիվը։*

*Բրոնխիալ ասթմայի, աթերոսկլերոզի և այլ հիվանդությունների բուժման բնագավառում «մեղվի կաթի» օգտագործման միջոցով նշանակալից հաջողությունների է հասել Կոլիցկի կլինիկայի գլխավոր բժիշկ Եվգեն Մալը։ Այդ հիվանդություններով տառապող հիվանդները զգում էին իրենց ավելի լավ, քան այլ պրեպարատներով բուժվելիս, հաճախ էլ այդ հիվանդությունների նշաններն իսպառ վերանում էին։*

### ՆԿԱՐԻ ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԳՐԱՌՈՒՄԸ

*Նկարը գործվածքի վրա արտատպելուց առաջ, ինչպես հայտնի է, այն վերցնում էին մետաղյա տպող գլանի վրա։ Այդ սովորաբար կատարվում էր մեխանիկական կամ ֆոտոմեխանիկական եղանակով, որոնք երկուսն էլ բարդ են, աշխատատար և երկար ժամանակ են պահանջում։ Բացի այդ, առաջին եղանակը պահանջում է բարձրորակ փորագրիչի աշխատանք, երկրորդը՝ լուսազգաց նյութեր ու քիմիական հակազդիչներ։ Իսկ նոր եղանակով նկարը հյուսվածքի վրա է տպվում գլանի օգնությամբ, որի վրա նկարն արտատպված է մագնիսական գրառումով։ Այդ արվում է մեկ գործողությամբ և այդ իսկ պատճառով՝ խիստ արագ։ Մագնիսական այդպիսի գրառումը կարելի է հեշտությամբ մաքրել էլեկտրամագնիսական ճանապարհով և գլանը նորից օգտագործել։*

*Եթե անհրաժեշտ է նկարն ավելի արագ փոխադրել գլանի վրա, պատկերը կարելի է բաժանել առանձին մասերի և նրանցից յուրաքանչյուրը գրառել առանձին մագնիսական գլխիկով։ Կարելի է ստանալ և բազմերանգ նկարներ։ Այդ դեպքում գունաբաժանումը կատարվում է էլեկտրամագնիսական ճանապարհով, որը շատ ավելի արագ է, քան ֆոտոմեխանիկականը։*

*Այս եղանակի կիրառման համար պահանջվում են էժան ու լայնորեն օգտագործվող նյութեր՝ երկաթի փոշի և անիլինի ներկեր, որոնք իջեցնում են տպող գլանի տեխնոլոգիական պատրաստման և նկարը հյուսվածքի վրա գրառելու արժեքը։ Արույրե թմբուկը, որն օգտագործվում է որպես գլան, ծածկում են կոբալտի, նիկելի և ֆոսֆորի հալվածքով, ապա նրա մակերեսին մագնիսական գլխիկի միջոցով ֆոտոհեռագրական կամ էլեկտրափորագրման հարմարանքներով գրառում են պատկերը։ Նկարի վրա ցանում են երկաթի փոշու և ջրի մեջ լուծվող անիլինի ներկի խառնուրդը։ Պետք է վերցնել 15 մաս փոշի, 1 մաս ներկ։ Փոշու շնորհիվ խառնուրդը ձգվում է դեպի գլանի մագնիսացված մասերը և նրա վրա գծագրվում է նկարը։ Գլանը հպում են թաց հյուսվածքին և ներկը ջրում լուծվելով արտատպվում է հյուսվածքի վրա։ Ներկի հետ միասին հյուսվածքի վրա է անցնում և երկաթի փոշին։ Բայց չորանալուց հետո այն մաքրում են։ Ներկը ամրացնում են սովորական ձևով։ Լաբորատոր փորձերը ցույց են տվել, որ շատ նպատակահարմար է այս եղանակի հետագա ուսումնասիրությունը և ներդրումը արդյունաբերության մեջ։*



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
41-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



digitised by A.R.A.R.@

СОДЕРЖАНИЕ







# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՆՈՐԱՀԱՅՏ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

Ստորև առաջին անգամ հրապարակվում են «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածի սկզբնական տարբերակի մի շարք գլուխները (IV-ի մի մասը, V, VI, VII, VIII, IX և X-ի սկիզբը)։ Վ. Ի. Լենինի Երկերի նախորդ հրատարակություններում տպագրվում էին այս տարբերակի միայն եզրափակիչ՝ X (վերջը), XI, XII, XIII գլուխները (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, 4-րդ հրատ., հատոր 27, էջ 237—258)։

Հրապարակվող գլուխների բնագիրն այն սղագրության վերծանումն է, որ Լենինը թելադրել էր սղագրին 1918 թվականի մարտի 23-ի և 28-ի միջև։ Հոդվածի այդ մասը հաջողվեց կարդալ Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի 36-րդ հատորը պատրաստելիս, որտեղ դա կտպագրվի նախկինում հայտնի գլուխների հետ միասին։

Վ. Ի. Լենինը «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածի վրա սկսել էր աշխատել Գերմանիայի հետ հաշտության պայմանագիրը կնքելուց և վավերացնելուց հետո։ Պատերազմից դուրս գալը, այդ ժամանակ Սովետական իշխանության ամրապնդվելը ամբողջ երկրում, ժողովրդական տնտեսության մի շարք կարևորագույն ճյուղերում հրամանատարական բարձունքները բանվորների և գյուղացիների պետության տրամադրության տակ անցնելը—այս ամենը բնորոշեց Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման նոր շրջանը։ Սովետական պետությունն առաջին անգամ հնարավորություն ստացավ հիմնական ուժերը կենտրոնացնելու խաղաղ տնտեսական և կուլտուրական շինարարության վրա, գլխավոր ուշադրությունը դարձնելու նոր, սոցիալիստական հասարակարգի ստեղծման մեծագույն խնդիրների լուծման վրա։

Այդ ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինը մշակում է սոցիալիստական շինարարության պլանը, որը շարադրված է «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածում (տե՛ս Երկեր, 4-րդ հրատ., հատոր 27, էջ 279—333)։

Ստորև հրապարակվող գլուխներում տրվում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի զարգացման տեսական խոր վերլուծությունը, բացահայտվում է տնտեսական շինարարության նշանակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում, ընդգծվում է ժողովրդական մասսաների դերը սոցիալիստական շինարարության մեջ։ Լենինը այդ գլուխներում նշում է Սովետական պետության տնտեսական քաղաքականության անհետաձգելի խնդիրները, պարզաբանում է այնպիսի միջոցառումների իրականացման անհրաժեշտությունը, ինչպիսիք են աշխատանքային պարհակ մտցնելը ունևոր դասակարգերի համար, աշխատանքային կարգապահության և ինքնակարգապահության

ամրապնդումն աշխատավորության մեջ, դրամական ռեֆորմի իրականացումը, բուրժուական մասնագետների օգտագործումը և այլն։

Սկզբնական տարբերակի առաջին անգամ հրապարակվող գլուխները ո՛չ միայն արտացոլում են «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածի վրա Վ. Ի. Լենինի կատարած աշխատանքի պրոցեսը, այլև հնարավորություն են տալիս ավելի խոր կերպով ըմբռնելու լենինյան այդ նշանակալի աշխատության բովանդակությունը։

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՄԱՐՔՍԻԶՄ–ԼԵՆԻՆԻԶՄԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# «ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ»

## (ՀՈԴՎԱԾԻ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿԻ ԳԼՈՒԽՆԵՐԸ)

### ԳԼՈՒԽ IV

. . . *

*Այժմ այդ խնդիրը, որը, իհարկե, դեռ բավականաչափ ավարտված չէ և երբեք էլ չի կարող սպառվել վերջնականապես, այլևս կանգնած չէ Սովետական իշխանության խնդիրների առաջին տեղում։ Սովետների վերջին համագումարները, և առանձնապես Մոսկվայի Համառուսաստանյան համագումարը[1], ցույց տվեցին, որ աշխատավոր դասակարգերի ճնշող մեծամասնությունը գիտակցաբար և հաստատապես անցել է Սովետական իշխանության կողմը ընդհանրապես և բոլշևիկների պարտիայի կողմը՝ մասնավորապես։ Ինքնին հասկանալի է, որ ժողովրդական մասսաներին համոզելու խնդիրը փոքրիշատե դեմոկրատական կառավարության համար երբեք էլ չի կարող ամբողջովին հետին պլան մղվել, ընդհակառակը, դա միշտ էլ կանգնած կլինի կառավարման կարևոր խնդիրների շարքում։ Բայց այդ խնդիրը առաջին տեղն է մղվում միայն օպոզիցիայի պարտիաների կամ ապագայի իդեալների իրականացման համար պայքարող պարտիաների համար։ Այն բանից հետո, երբ բոլշևիկներին հաջողվեց, դեռևս ցարիզմի ժամանակ, մի կողմից, և Կերենսկու կառավարության ժամանակ, մյուս կողմից, իրենց կողմը գրավել աշխատավոր մասսաների ակտիվ և գիտակից տարրերի մեծամասնությունը, մեր պարտիայի առջև ծառացավ իշխանությունը նվաճելու և շահագործողների դիմադրությունը ճնշելու խնդիրը։ Համոզելու փոխարեն առաջին տեղում դրվեց Ռուսաստանը նվաճելու խնդիրը։ 1918 թվականի հոկտեմբերի վերջերից և մոտավորապես մինչև 1918 թ. փետրվարը այդ մարտական կամ ռազմական խնդիրը առաջին պլանի վրա էր կանգնած, ինչպես որ այդ խնդիրը բնականորեն պետք է առաջին պլանի վրա կանգնած լինի ամեն մի քաղաքական պարտիայի համար, որը գերիշխանության է հասնում սուր և ամենից ավելի կատաղի պայքարի պայմաններում։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ շահագործողների դիմադրությունը ճնշելու խնդիրը պրոլետարիատի պարտիայի համար առանձնապես սուր կերպով է դրվում, որովհետև պրոլետարիատի կողմն անցնող աշխատավոր մասսաների դեմ այստեղ հանդես են գալիս ունևոր դասակարգերի միավորված ներկայացուցիչները, որոնք զինված են թե՛ կապիտալի ուժով, թե՛ գիտության ուժով և թե՛ կառավարման բազմամյա, եթե չասենք դարավոր, սովորությամբ և ունակությամբ։ Այն առանձնահատուկ պայմանների շնորհիվ, որոնք պատմականորեն ստեղծվեցին Ռուսաստանում 1905 թվականի ռևոլյուցիայի դեռևս չմոռացված դասերի ազդեցության ներքո և ներկա պատերազմի անհամեմատ ավելի ծանր և սուր դասերի ազդեցության ներքո, այդ պայմանների շնորհիվ բոլշևիկներին հաջողվեց իշխանության նվաճման խնդիրը համեմատաբար չափազանց հեշտ լուծել ինչպես մայրաքաղաքում, այնպես էլ Ռուսաստանի գլխավոր արդյունաբերական կենտրոններում։ Բայց գավառում, կենտրոնից հեռու ընկած վայրերում, և հատկապես Ռուսաստանի այն շրջաններում, որտեղ ամենից ավելի շատ որոշակի քանակությամբ կենտրոնացած էր այն բնակչությունը, որը համեմատաբար հետամնաց է և ամենից ավելի ամուր է կառչում միապետության և միջնադարի տրադիցիաներին, օրինակ, կազակների մարզերում, Սովետական իշխանությանը վիճակվեց հանդիպել մի այնպիսի դիմադրության, որը ռազմական ձևեր էր ընդունել, և որը միայն այժմ, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ժամանակվանից ավելի քան չորս ամիս անցնելուց հետո, իր լիակատար վախճանին է հասնում։ Ներկայումս շահագործողների դիմադրությունը հաղթահարելու և ճնշելու խնդիրը Ռուսաստանում ավարտված է իր գլխավոր գծերով։ Ռուսաստանը նվաճված է բոլշևիկների կողմից գլխավորապես այն պատճառով,—ինչպես այդ վերջերս խոստովանեց նաև Դոնի կոնտրռևոլյուցիոն կազակության ականավոր գործիչ Բոգաևսկին[2],— որ անգամ կազակության շրջանում ժողովրդի ճնշող մեծամասնությունը գիտակցաբար, հաստատապես և վճռականապես անցավ բոլշևիկների կողմը։ Բայց այն առանձնահատուկ պայմանները, որոնցում դրված են ունևոր դասակարգերն իրենց տնտեսական դրությամբ, նրանց բնական հնարավորություն են ընձեռում ո՛չ միայն պասսիվ դիմադրություն (սաբոտաժ) կազմակերպելու, այլև կրկնելու Սովետական իշխանությանը ռազմական դիմադրություն ցույց տալու փորձը։ Ուստի շահագործողների դիմադրությունը ճնշելու խնդիրը նույնպես չի կարող մինչև վերջ ավարտված համարվել։ Բայց համենայն դեպս այդ խնդիրը այժմ բացահայտորեն լուծված է արդեն գլխավոր գծերով և երկրորդ պլանն է մղվում։ Սովետական իշխանությունն իրեն ոչ մի րոպե թույլ չի տա մոռանալ այդ խնդրի մասին և ոչ մի կերպ թույլ չի տա, որ այդ խնդրի կատարումից իրեն շեղեն ամեն տեսակ քաղաքական կամ որպես թե սոցիալիստական կոչումներով ու դեկլամացիայով։ Այս մասին հարկ է նախապես զգուշացնել, որովհետև մեզանում թե՛ մենշևիկները և թե՛ աջ էսեռները իրենց այնպես են պահում, ինչպես կոնտրռևոլյուցիայի ամենից ավելի փութաջան, երբեմն անգամ ինչպես ամենից ավելի լկտի, գործիչները, Սովետական իշխանության դեմ անհամեմատ ավելի սուր կերպով պայքար մղելով, քան նրանք իրենց թույլ են տվել այն մղել ռեակցիոն և կալվածատիրական կառավարությունների դեմ, և հույսը դնելով իրենց պարտիայի պիտակով կամ անունով պաշտպանվելու վրա։ Հասկանալի է, որ Սովետական իշխանությունը երբեք էլ կանգ չի առնի շահագործողների դիմադրությունը ճնշելու իր խնդիրը կատարելու գործում, ինչպիսի պարտիական դրոշներով կամ ինչպիսի պոպու-*

* Սղագրության սկիզբը չի գտնված։— Խմբ.

լյար և բարետես անունով էլ այդ դիմադրությունը քողարկվի։ Բայց դիմադրությունը ճնշելու խնդիրն արդեն ավարտված է գլխավոր գծերով և այժմ հերթի է դրվում պետության կառավարման խնդիրը։

Ահա այդ անցումը բնակչության մասսաներին համոզելու՝ առաջին տեղում կանգնած խնդրից և իշխանության նվաճման ու դիմադրող շահագործողների ռազմական ճնշման խնդրից դեպի պետության կառավարման՝ առաջին տեղում կանգնող խնդրին կատարվող այդ անցումը կազմում է մեր ապրած մոմենտի գլխավոր յուրահատկությունը։ Սովետական իշխանության դժվարությունը նշանակալի չափով այն է, որ կարողանա այնպես անել, որ այդ անցման առանձնահատկությունները հստակ յուրացնեն ինչպես ժողովրդի քաղաքական ղեկավարները, այնպես էլ աշխատավոր մասսաների բոլոր գիտակից տարրերն ընդհանրապես։ Որովհետև ինքնին հասկանալի է, որ առանց դասակարգերի խորության ամբողջ բնակչության կառավարման խաղաղ խնդիրներին անցնելը,— հասկանալի է, որ այդպիսի անցումը տեղ-տեղ դեռևս չավարտված քաղաքացիական կռվի պայմաններում, թե՛ արևմուտքից և թե՛ արևելքից Սովետական ռեսպուբլիկային սպառնացող ռազմական վիթխարի վտանգների պայմաններում, վերջապես, պատերազմի ստեղծած չտեսնված փլուզման պայմաններում,—հասկանալի է, որ այդպիսի անցումը հսկայական դժվարություններ է ներկայացնում։

## ԳԼՈՒԽ V

Պետության կառավարման խնդիրը, որն այժմ առաջին պլանի վրա է մղվել Սովետական իշխանության առջև, նաև այն առանձնահատկությունն է ներկայացնում, որ այժմ, և, թերևս, քաղաքակրթված ժողովուրդների նորագույն պատմության մեջ առաջին անգամ, խոսքը մի այնպիսի կառավարման մասին է, երբ գերադասելի նշանակություն է ձեռք բերում ո՛չ թե քաղաքականությունը, այլ էկոնոմիկան։ Սովորաբար «կառավարում» բառի հետ առնչում են հատկապես և ամենից առաջ առավելապես, կամ անգամ զուտ, քաղաքական գործունեությունը։ Մինչդեռ Սովետական իշխանության բուն հիմունքները, բուն էությունը, ինչպես նաև կապիտալիստական հասարակարգից դեպի սոցիալիստականը կատարվող անցման բուն էությունն այն է, որ քաղաքական խնդիրները ստորադաս տեղ են գրավում տնտեսական խնդիրների նկատմամբ։ Եվ այժմ, հատկապես Ռուսաստանում Սովետական իշխանության ավելի քան չորսամսյա գոյության պրակտիկ փորձից հետո, մեզ համար պետք է լիովին պարզ լինի, որ պետության կառավարման խնդիրը ամենից առաջ և առաջին հերթին այժմ հանգում է այն զուտ տնտեսական խնդրին, որի նպատակն է՝ երկիրը բուժել պատերազմի հասցրած վերքերից, վերականգնել արտադրողական ուժերը, կարգավորել արդյունքների արտադրության և բաշխման հաշվառումն ու վերահսկողությունը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը,— մի խոսքով, այն հանգում է տնտեսական վերակազմության խնդրին։

Կարելի է ասել, որ այդ խնդիրը բաժանվում է երկու գլխավոր հատվածի՝ 1) հաշվառում և վերահսկողություն արդյունքների արտադրության և բաշխման նկատմամբ՝ այդ հաշվառման և վերահսկողության ամենից ավելի լայն, համատարած և համապարփակ ձևերով և 2) աշխատանքի արտադրողականության բարձրացում։ Այդ խնդիրները սոցիալիզմին անցնող ամեն մի հանրություն



կամ ամեն մի պետություն կարող է լուծել միայն այն պայմանով, եթե դրա տնտեսական, սոցիալական, կուլտուրական և քաղաքական նախադրյալները բավականաչափ ստեղծված լինեն կապիտալիզմի կողմից։ Առանց խոշոր մեքենայական արտադրության, առանց երկաթուղիների, փոստ-հեռագրական կապերի քիչ թե շատ զարգացած ցանցի, առանց ժողովրդական կրթության հաստատությունների քիչ թե շատ զարգացած ցանցի, ո՛չ այս, ո՛չ էլ մյուս խնդիրը սիստեմատիկ ձևով և համաժողովրդական ծավալով, անվերապահորեն, չեն կարող լուծվել։ Ռուսաստանը գտնվում է մի այնպիսի դրության մեջ, երբ առկա են այդպիսի անցման մի ամբողջ շարք սկզբնական նախադրյալներ։ Մյուս կողմից, մի ամբողջ շարք նման նախադրյալներ չկան մեր երկրում, բայց մեր երկիրը դրանք կարող է համեմատաբար հեշտորեն փոխ առնել հարևան, շատ ավելի առաջավոր այն երկրների պրակտիկ փորձից, որոնք պատմության և միջազգային հաղորդակցության կողմից վաղուց արդեն սերտ կապի մեջ են դրված Ռուսաստանի հետ։

## ԳԼՈՒԽ VI

Սոցիալիստական կառուցվածքի անցնող ամեն մի հասարակարգի արմատական խնդիրը գերիշխող դասակարգի կամ, ավելի ճիշտ, որպես գերիշխող դասակարգ աճող պրոլետարիատի հաղթանակն է բուրժուազիայի դեմ այն բանին համեմատ, ինչ ասվեց վերևում։ Բայց այդ խնդիրը այժմ մեր առջև դրվում է նշանակալի չափով նոր ձևով, բոլորովին ոչ այնպես, ինչպես այն դրվել է բուրժուազիայի դեմ պրոլետարիատի մղած պայքարի համաշխարհային փորձի բազում տասնամյակների ընթացքում։ Բուրժուազիայի դեմ հաղթանակ ասելով մենք այժմ, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումներից հետո, քաղաքացիական կռվում ունեցած հաջողություններից հետո, կարող ենք և պետք է հասկանանք արդեն շատ ավելի բարձր, թեկուզ և ձևով ավելի խաղաղ բան, այն է՝ բուրժուազիայի դեմ հաղթանակը պետք է իրականանա այժմ, այն բանից հետո, երբ այդ հաղթանակը ձեռք է բերված քաղաքականապես և ամրապնդված է ռազմականապես,— այժմ այդ հաղթանակը պետք է ձեռք բերվի ժողովրդական տնտեսության կազմակերպման բնագավառում, արտադրության կազմակերպման բնագավառում, համաժողովրդական հաշվառման և վերահսկողության բնագավառում։ Բուրժուազիան արտադրության հաշվառման և վերահսկողության խնդիրները լուծում էր այնքան ավելի մեծ հաջողությամբ, որքան ավելի խոշոր էր դառնում արտադրությունը, որքան ավելի խիտ էր դառնում արդի խոշոր պետության տասնյակ և հարյուր միլիոնավոր բնակչությունն ընդգրկող համապետական տնտեսական հաստատությունների ցանցը։ Այդ խնդիրը մենք այժմ պետք է լուծենք նոր ձևով, հենվելով պրոլետարիատի գերիշխող դիրքի վրա, աշխատավորների և շահագործվող մասսաների մեծամասնության կողմից նրան ցույց տրվող աջակցության վրա, օգտագործելով կազմակերպչական տաղանդի, տեխնիկական գիտելիքների այն տարրերը, որոնք կուտակել է նախորդ հասարակությունը և որոնք ինը տասներորդով և, մի գուցե, նաև իննսունինը հարյուրերորդով պատկանում են այն դասակարգին, որը թշնամաբար դիմադրում է սոցիալիստական ռևոլյուցիային։

## ԳԼՈՒԽ VII

Գերմանական իմպերիալիզմը, որը ներկայումս ոչ միայն ռազմական հզորության և ռազմական տեխնիկայի առավել առաջադիմություն, այլև կապիտալիզմի շրջանակներում արդյունաբերական խոշոր կազմակերպություններ է ներկայացնում, իր տնտեսական առաջադիմականությունը նշանավորեց, ի միջի այլոց, նրանով, որ մյուս պետություններից ավելի շուտ իրականացրեց աշխատանքային պարհակին անցնելը։ Հասկանալի է, որ կապիտալիստական հասարակության պայմաններում ընդհանրապես և իմպերիալիստական պատերազմ մղող միապետական պետությունների պայմաններում առանձնապես, աշխատանքային պարհակը ոչ այլ ինչ է, քան եթե ռազմա-տաժանակիր մի բանտ բանվորների համար, աշխատավորների և շահագործվող մասսաների ստրկացման նոր միջոց, այդ մասսաների յուրաքանչյուր բողոքը ճնշելու միջոցառումների նոր սիստեմ։ Բայց այնուամենայնիվ անտարակուսելի է, որ խոշոր կապիտալիզմի ստեղծած տնտեսական նախադրյալների շնորհիվ միայն այդպիսի ռեֆորմը կարող էր հերթի դրվել և կարող էր իրականացվել։ Եվ մենք այժմ, պատերազմից հետո ստեղծված անասելի քայքայման պայմաններում, հարկադրված ենք, անտարակույս, առաջին տեղերից մեկում դնել նման մի ռեֆորմ։ Բայց հասկանալի է, որ Սովետական իշխանությունը, որը հասարակության կապիտալիստական կազմակերպումից անցնում է սոցիալիստականին, աշխատանքային պարհակի իրականացումը պետք է սկսի բնավ ոչ այն ծայրից, որ ծայրից այն սկսել էր իրականացնել գերմանական իմպերիալիզմը։ Գերմանիայի կապիտալիստների և իմպերիալիստների համար աշխատանքային պարհակը նշանակում էր բանվորների ստրկացում։ Ռուսաստանի բանվորների և չքավոր գյուղացիների համար աշխատանքային պարհակը պետք է ամենից առաջ և ամենից շատ նշանակի հարուստ և ունևոր դասակարգերի ներգրավում իրենց հասարակական ծառայությունը կատարելու գործում։ Մենք աշխատանքային պարհակը պետք է սկսենք իրականացնել հարուստներից։

Դրա անհրաժեշտությունը բխում է, ընդհանրապես ասած, ոչ միայն այն բանից, որ Սովետական Ռեսպուբլիկան սոցիալիստական ռեսպուբլիկա է։ Դրա անհրաժեշտությունը բխում է նաև այն բանից, որ հենց հարուստ և ունևոր դասակարգերն էին ինչպես ռազմական, այնպես էլ պասսիվ (սաբոտաժ) դիմադրությամբ դժվարացրել պատերազմի հասցրած վերքերից Ռուսաստանը բուժելու գործը, երկրի տնտեսական առողջացման և վերելքի գործը։ Եվ այդ իսկ պատճառով հաշվառումն ու վերահսկողությունը, որոնք այժմ պետք է որ կազմեն ամբողջ պետական կառավարման անկյունաքարը, պետք է ամենից առաջ պահանջվեն հարուստ և ունևոր դասակարգերի ներկայացուցիչներից։ Հենց այդ դասակարգերի ներկայացուցիչներն օգտվեցին այն տուրքից, որը նրանք առանձնապես մեծ չափով աշխատավորներից հավաքել էին պատերազմի ընթացքում, հենց նրանք օգտվեցին այդ տուրքից, որպեսզի խուսափեն երկրի բուժման և նրա նորոգման՝ յուրաքանչյուր քաղաքացու համար պարտադիր խնդիրները կատարելուց, հենց նրանք օգտվեցին իրենց կողոպտած տուրքից, որպեսզի նստեն ու խրամատավորվեն անառիկ բեստում[3] և ամեն տեսակ դիմադրություն ցույց տան հասարակության կառուցման սոցիալիստական սկզբունքի հաղթանակին կապիտալիստականի նկատմամբ։ Սովետական իշխանության դեմ և սոցիալիզմի դեմ այդպիսի պայքարի գլխավոր մի-



ջոցներից մեկը հարուստ և ունևոր դասակարգերի համար այն է, որ նրանք ունեն դրամանիշների մեծ պաշարներ։ Կապիտալիստական հասարակության մեջ ունևոր դասակարգերի հարստությունը ամենից առաջ այն է, որ նրանք ունեին հող և արտադրության այլ միջոցներ՝ ֆաբրիկաներ, գործարաններ և այլն։ Սովետական իշխանության համար դժվար չէր, բանվորների և գյուղացիների վիթխարի մեծամասնության աջակցության շնորհիվ, վերացնել կալվածատերերի և բուրժուազիայի իրավունքը երկրի հարստության այդ հիմնական տեսակի նկատմամբ։ Դժվար չէր դեկրետավորել հողի մասնավոր սեփականության վերացումը։ Դժվար չէր ազգայնացնել ֆաբրիկաների և գործարանների մեծ մասը։ Անկասկած մնացած խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի միջոցների ազգայնացումը ևս այնպիսի մի խընդիր է, որպիսին հեշտորեն կիրականացվի ամենամոտ ապագայում[4]։

Բայց կապիտալիստական հասարակությունը ստեղծել է հարստության մի այլ ձև, որի հետ հաշիվ տեսնելը Սովետական իշխանության համար այնքան էլ հեշտ չէ։ Հարստության այդ ձևը փողն է, կամ նույնիսկ ավելի ճիշտը՝ դրամանիշները։ Պատերազմի ժամանակ դրամանիշների թողարկումը առանձնապես մեծ չափերի հասավ։ Ռուսաստանը պատերազմական գործողությունների պատճեռով անջատված էր մի ամբողջ շարք երկրների հետ ունեցած առևտրական շրջանառությունից, երկրներ, որոնք մինչև այդ ամենից ավելի էին մասնակցում ներմուծմանը և արտահանմանը Ռուսաստանից։ Եվ դրամանիշները կուտակումը հարուստ և ունևոր դասակարգերի ձեռքում, որոնք թե՛ ուղղակի և թե՛ անուղղակի կերպով գրեթե գլխովին մասնակցում էին ռազմական մատակարարումների և կապալների գծով բարձր գներով կատարվող սպեկուլյացիային,— մեծ քանակությամբ դրամանիշներ դիզելը հարստությունների կուտակման և աշխատավորների նկատմամբ ունևոր դասակարգերի իշխանության կուտակման գլխավոր եղանակներից մեկն է։ Ներկայումս Ռուսաստանի տնտեսական դրությունը,—ինչպես և, հավանորեն, եռամյա պատերազմ ապրած ամեն մի կապիտալիստական երկրի,— Ռուսաստանի տնտեսական դրությունը բնութագրվում է նրանով, որ համեմատաբար սակավաթիվ փոքրամասնություն կազմող բուրժուազիայի և ունևոր դասակարգերի ձեռքում կուտակված են և նրանց կողմից թաքցված են դրամանիշների հսկայական պաշարներ, որոնք խիստ արժեքազրկված են թղթադրամների վիթխարի թողարկման հետևանքով, բայց որոնք այնուամենայնիվ մինչև այժմ էլ աշխատավոր բնակչությունից տուրք գանձելու իրավունքի վկայագիր են։

Կապիտալիստական հասարակարգից սոցիալիստականին անցնելու ժամանակ առանց դրամանիշների կառավարվելը կամ դրանք կարճ ժամանակամիջոցում նորերով փոխարինելը միանգամայն անհնարին բան է։ Սովետական իշխանության առջև այժմ ծառացած է մի դժվարին խնդիր, որը պետք է լուծել ինչ էլ որ լինի, հարուստների դիմադրության դեմ պայքարելու խնդիրը, դիմադրություն, որն ընդունում է աշխատավորներից տուրք գանձելու վկայագրերը պահելու ու թաքցնելու ձև։ Այդպիսի վկայագրեր են դրամանիշները։ Իհարկե, որչափով որ այդ դրամանիշները նախկինում իրավունք էին տալիս ձեռք բերել, գնել արտադրության միջոցներ, օրինակ՝ հող, ֆաբրիկաներ, գործարաններ և այլն, այդ չափով էլ այդ դրամանիշների նշանակությունը ընկնում է և անգամ բոլորովին զրոյի է հավասարվում։ Որովհետև Ռուսաստանում հող գնելը արդեն անհնարին է դարձել հողի սոցիալիզացիայի օրեն-

քի հրատարակումից հետո, իսկ ֆաբրիկաներ և գործարաններ, ինչպես նաև դրանց նման արտադրության և տրանսպորտի խոշոր միջոցներ գնելը գրեթե անհնարին է դարձել նման տեսակի բոլոր խոշոր ձեռնարկությունների ազգայնացման և բռնագրավման արագ ընթացող պրոցեսի շնորհիվ։ Նշանակում է, արտադրության միջոցներ գնելու համար դրամական գումարներ ձեռք բերելը բուրժուազիայի և ունևոր դասակարգերի համար (այդ թվում գյուղացիական բուրժուազիայի համար) գնալով ավելի ու ավելի դժվարին և գրեթե անհնարին բան է դառնում։ Բայց, պաշտպանելով իր հին արտոնությունները և ճգնելով որքան կարելի է դանդաղեցնել ու դժվարացնել երկրի սոցիալիստական վերափոխության գործը, բուրժուազիան պահում ու թաքցնում է հանրային հարստության բաժնի նկատմամբ ունեցած իր վկայագրերը, աշխատավորներից տուրք գանձելու իր վկայագրերը, պահում և թաքցնում է դրամանիշները, որպեսզի թեկուզ որոշ չափով ապահովի իր համար պահպանելու իր դրությունը և վերադարձնելու հին արտոնությունները դժվարությունների կամ ռազմական ու առևտրական բնույթի այն ճգնաժամերի դեպքում, որոնք դեռ կարող են լինել Ռուսաստանում։

Իսկ ինչ վերաբերում է սպառման առարկաներին, ապա պատերազմի ժամանակ սպեկուլյացիայով կուտակած դրամանիշների գումարով դրանք ձեռք բերելու հնարավորությունը բուրժուազիայի և ունևոր դասակարգերի ձեռքին մնացել է գրեթե լիովին, որովհետև սպառման այդ առարկաների ճիշտ նորմավորման, ճիշտ բաշխման խնդիրը այնպիսի մի երկրում, ինչպիսին է Ռուսաստանը, մանր գյուղացիական և մանր արհեստավորական կամ բնակչության տնայնագործական խավերի վիթխարի քանակի պարագայում, այդ խնդիրը հսկայական դժվարություններ է ներկայացնում, իսկ պատերազմի ստեղծած քայքայման պայմաններում այդ խնդիրը մինչև այժմ էլ գրեթե անլուծելի է մնում։ Եվ, այսպիսով, Սովետական իշխանությունը հարկադրված է արդյունքների արտադրության և բաշխման հաշվառումն ու վերահսկողությունը սկսել հարուստ և ունևոր դասակարգերի դեմ կազմակերպված պայքարից, որոնք դրամանիշների վիթխարի գումարներ են թաքցնում ամեն տեսակ պետական վերահսկողությունից։

Կարելի է հաշվել, որ Ռուսաստանում ներկայումս բաց են թողնված մոտ 30 միլիարդ ռուբլու դրամանիշներ։ Այդ գումարից, հավանորեն, ոչ պակաս քան 20 միլիարդը, իսկ, մի գուցե, նաև շատ ավելի մեծ մասը, մի պաշար է, որը բոլորովին հարկավոր չէ առևտրական շրջանառության համար և որը պահվում, թաքցվում, սքողվում է բուրժուազիայի և ունևոր դասակարգերի ներկայացուցիչների կողմից շահամոլական—կամ շահամոլական-դասակարգային—նպատակներով։

Սովետական իշխանությունն աշխատանքային պարհակ մտցնելը պետք է որ միացնի ամենից առաջ բուրժուազիայի և ունևոր դասակարգերի ներկայացուցիչների հաշվառման հետ, պետք է որ պահանջի ճշմարտությանը համապատասխանող հայտարարություններ (դեկլարացիաներ) ունեցած դրամանիշների քանակի մասին, պետք է որ մի շարք միջոցներ ձեռք առնի, որպեսզի այդ պահանջը չմնա թղթի վրա, պետք է որ նախատեսի դրամանիշների բոլոր պաշարները Պետական բանկում կամ նրա բաժանմունքներում կենտրոնացնելու անցման միջոցառումներ։ Առանց այդպիսի միջոցառումների՝ արդյունքների



արտադրության և բաշխման հաշվառումն ու վերահսկողությունը չի կարող մինչև վերջ հասցվել։

## ԳԼՈՒԽ VIII

Բայց աշխատանքային պարհակ մտցնելը չի կարող սահմանափակվել դրամանիշների այն գումարների հաշվառմամբ ու վերահսկողությամբ, որ կենտրոնացած են ունևոր դասակարգերի ձեռքում։ Սովետական իշխանությունը ստիպված կլինի աշխատանքային պարհակի սկզբունքները իրագործել նաև ձեռնարկությունները կառավարելու և այդ ձեռնարկությունները ամեն տեսակ օժանդակ աշխատանքով՝ հաշվապահական, գրասենյակային, հաշվային, տեխնիկական, վարչական և այլ աշխատանքով սպասարկելու բնագավառում բուրժուազիայի և ունևոր դասակարգերի անմիջական գործունեության նկատմամբ։ Այդ տեսակետից Սովետական իշխանության խնդիրը ևս սաբոտաժի դեմ մղվող ուղղակի պայքարի բնագավառից այժմ փոխադրվում է նոր պայմաններում գործը կազմակերպված ձևով կարգավորելու բնագավառը, որովհետև այն հաղթանակներից հետո, որ Սովետական իշխանությունը տարել է քաղաքացիական պատերազմում, սկսած հոկտեմբերից և վերջացրած փետրվարով,— դիմադրության պասսիվ ձևերը,— այն է՝ բուրժուազիայի և բուրժուական ինտելիգենցիայի սաբոտաժը, ըստ էության փշրվել են։ Պատահական չէ, որ ներկայումս մենք տրամադրության և քաղաքական վարքագծի չափազանց լայն, կարելի է ասել մասսայական շրջադարձ ենք տեսնում նախկին սաբոտաժնիկների, այսինքն՝ կապիտալիստների և բուրժուական ինտելիգենցիայի լագերում։ Այժմ տնտեսական ու քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում մենք մեր առջև ունենք ծառայություններ մատուցելու առաջարկ մեծաթիվ բուրժուական ինտելիգենցիայի և կապիտալիստական տնտեսության գործիչների կողմից,— նրանց կողմից ծառայությունների առաջարկ Սովետական իշխանությանը։ Եվ այժմ Սովետական իշխանության խնդիրն է՝ կարողանալ օգտվել այդ ծառայություններից, որոնք սոցիալիզմին անցնելու համար անպայման անհրաժեշտ են, մանավանդ այնպիսի գյուղացիական երկրում, ինչպիսին Ռուսաստանն է, և որոնք պետք է վերցվեն՝ լիովին պահպանելով Սովետական իշխանության գլխավորությունը, ղեկավարությունն ու վերահսկողությունն իր նոր օգնականների ու աջակիցների նկատմամբ, որոնք շարունակ գործում էին նրա կամքին հակառակ և այդ Սովետական իշխանության դեմ բողոքելու թաքուն հույսով։

Որպեսզի ցույց տանք, թե հենց սոցիալիզմին անցնելու համար որքան անհրաժեշտ է, որ Սովետական իշխանությունն օգտվի բուրժուական ինտելիգենցիայի ծառայություններից, մենք թույլ կտանք մեզ գործածել մի արտահայտություն, որ առաջին հայացքից կարող է պարադոքս թվալ՝ սոցիալիզմն զգալի չափով պետք է սովորել տրեստների ղեկավարներից, սոցիալիզմը պետք է սովորել կապիտալիզմի խոշորագույն կազմակերպիչներից։ Որ դա պարադոքս չէ, դրանում հեշտությամբ կհամոզվի ամեն ոք, ով կխորհի, որ հենց խոշոր գործարանները, հենց խոշոր մեքենաները, ինդուստրիան, որ չտեսնված չափով զարգացրել է աշխատավորների շահագործումը,— հենց խոշոր գործարաններն են այն դասակարգի համախմբման կենտրոնները, որը միայն

ի վիճակի եղավ ոչնչացնելու կապիտալի տիրապետությունը և սկսելու անցումը դեպի սոցիալիզմ։ Ուստի զարմանալի չէ, որ սոցիալիզմի գործնական խընդիրները լուծելու համար, երբ հերթի է դրված նրա կազմակերպական կողմը, մենք անհրաժեշտաբար Սովետական իշխանությանն աջակցելու համար պետք է ներգրավենք բուրժուական ինտելիգենցիայի մեծաթիվ ներկայացուցիչների, մանավանդ նրանց թվից, ովքեր զբաղված են եղել կապիտալիստական շրջանակներում խոշորագույն արտադրություն կազմակերպելու գործնական աշխատանքով, ուրեմն և առաջին հերթին սինդիկատների, կարտելների և տրեստների կազմակերպումով։ Այդ խնդիրը լուծելու համար, իհարկե, Սովետական իշխանությունից կպահանջվի եռանդի լարում, աշխատավորների լայն մասսայի նախաձեռնություն ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, որովհետև արդյունաբերության այսպես կոչված առաջնորդների հին դիրքը,— պետերի և շահագործողների հին դիրքը,— այդ հին դիրքը Սովետական իշխանությունը նրանց երբեք չի տա։ Արդյունաբերության նախկին առաջնորդները, նախկին պետերը և շահագործողները պետք է գրավեն տեխնիկական էքսպերտների, ղեկավարների, կոնսուլտանտների, խորհրդատուների տեղը։ Պետք է լուծվի շահագործող դասակարգերի այդ ներկայացուցիչների կուտակած ամբողջ փորձն ու գիտելիքները աշխատավոր մասսաների լայն խավերի ինքնագործունեության, եռանդի, աշխատանքի հետ միացնելու դժվարին և նոր, բայց չափազանց շնորհակալ խնդիրը։ Որովհետև միայն այդ միացումն է ի վիճակի ստեղծելու այն կամուրջը, որ հին կապիտալիստական հասարակարգից տանում է դեպի նոր, սոցիալիստական հասարակարգը։

Եթե սոցիալիստական ռևոլյուցիան միաժամանակ հաղթանակեր ամբողջ աշխարհում կամ, առնվազն, մի ամբողջ շարք առաջավոր երկրներում, ապա հին կապիտալիզմի ղեկավարների թվից լավագույն մասնագետ տեխնիկների արտադրության նոր կազմակերպման պրոցեսին մասնակից դարձնելու խընդիրը չափազանց կհեշտանար։ Այն ժամանակ հետամնաց Ռուսաստանը ստիպված չէր լինի ինքնուրույն կերպով մտածել այդ խնդրի լուծման մասին, որովհետև մեզ օգնության կհասնեին արևմտաեվրոպական երկրների առաջավոր բանվորները և կվերացնեին մեր դժվարությունների մեծ մասը սոցիալիզմին անցնելու այն ամենադժվարին խնդրում, որ կոչվում է կազմակերպական խընդիր։ Այժմ, այնպիսի փաստական դրության մեջ, երբ Արևմուտքում սոցիալիստական ռևոլյուցիայի սկսվելը դանդաղել և ուշացել է, իսկ Ռուսաստանը ստիպված է արագորեն միջոցներ ձեռք առնել իր վերակազմության համար,— թեկուզ և պարզապես ելնելով բնակչությունը սովից փրկելու շահերից, իսկ ապա՝ ամբողջ երկիրը հնարավոր ռազմական արշավանքից փրկելու շահերից,— այժմ մեզ վիճակված է առաջավոր երկրներից ստանալ ոչ թե սոցիալիստական կազմակերպության օգնությունը և բանվորների աջակցությունը, այլ այնտեղի բուրժուազիայի և կապիտալիստական ինտելիգենցիայի օգնությունը։

Եվ հանգամանքներն այնպես են դասավորվում, որ մենք այդ օգնությունը կարող ենք ստանալ, կազմակերպելով բուրժուական ինտելիգենցիայի աջակցությունը Սովետական իշխանության կազմակերպական նոր պրոբլեմների գործում։ Այդ աջակցությունը կարելի է ստանալ գիտության յուրաքանչյուր ճյուղի՝ ինչպես մեր պետությանը պատկանող, այնպես էլ արտասահմանից վերցված ամենալավագույն մասնագետների աշխատանքի բարձր վարձատրու-



թյան օգնությամբ։ Իհարկե, խոսելով արդեն զարգացած սոցիալիստական հա-
սարակարգի տեսակետից, միանգամայն անարդարացի և անճիշտ է թվում, որ
բուրժուական ինտելիգենցիայի ներկայացուցիչներն աշխատանքի համար ան-
համեմատ ավելի բարձր վարձատրություն ստանան, քան բանվոր դասակարգի
լավագույն խավերի աշխատանքի վարձատրությունն է։ Բայց պրակտիկ իրա-
կանության պայմաններում *... մենք անպայման պետք է լուծենք անհետա-
ձգելի խնդիրը՝ շատ ավելի բարձր նորմաներով բուրժուական մասնագետների
աշխատանքի այդ (անարդարացի) վարձատրության միջոցով։ Եթե, օրինակ,
մենք ենթադրենք, որ Ռուսաստանը արտադրությունը նոր հիմունքներով կազ-
մակերպելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, մեր ժո-
ղովրդին լավագույն պայմաններում աշխատելու արվեստը սովորեցնելու հա-
մար,— եթե ենթադրենք, որ մենք ստիպված կլինեինք դրա համար վարձել
ասենք, գիտության տարբեր բնագավառների երկու հազար խոշորագույն մաս-
նագետներ,— ռուսական մասնագետների և է՛լ ավելի շատ արտասահմանյան
ասենք, ամերիկյան մասնագետների թվից, եթե մենք ստիպված լինեինք
նրանց վճարել տարեկան հիսուն կամ հարյուր միլիոն ռուբլի, ապա, ժողովր-
դական տնտեսության շահերի տեսակետից, ընդհանրապես արտադրության
հնացած պրիոմներից նորագույն, առավել կատարելագործվածներին անցնե-
լու տեսակետից,— այդպիսի ծախսը միանգամայն հիմնավորված կլիներ։
Արտադրության լավ եղանակներ ու պրիոմներ սովորեցնելու համար այդպիսի
գումար պե՛տք է տալ, և արժե տալ, և այդպիսի գումար մենք ստիպված կլի-
նենք տալ, որովհետև նման ղեկավարություն ստանալու մի այլ հնարավորու-
թյուն կարող է ստեղծել բացառապես սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթա-
նակը մյուս երկրներում։
Իհարկե, բուրժուական ինտելիգենցիայի ներկայացուցիչների աշխատան-
քի և ղեկավար ցուցումների օգտագործումը աշխատավորների դեմոկրատական
կազմակերպությունների և Սովետների կողմից իրականացվող անհրաժեշտ
վերահսկողության հետ միացած՝ կստեղծի մի ամբողջ շարք նոր պրոբլեմներ,
բայց այդ պրոբլեմները միանգամայն լուծելի են։ Եվ մենք չենք կարող կանգ
առնել ոչ մի դժվարության առաջ այդ պրոբլեմները լուծելու համար, որովհետև
գործի տվյալ վիճակի պայմաններում արտադրության բարձրագույն կազմա-
կերպման այլ ելք մենք չունենք։
Անցնում եմ առաջ։ Խոշորագույն կապիտալիզմն ստեղծել է աշխատանքի
կազմակերպման այնպիսի սիստեմներ, որոնք բնակչության մասսաների շա-
հագործման պայմաններում եղել են ունևոր դասակարգերի փոքրամասնու-
թյան կողմից աշխատավորներին ստրկացնելու և նրանցից աշխատանքի հա-
վելյալ քանակ, ուժ, արյուն ու ներվեր քամելու ամենավատթար ձև, բայց
որոնք միևնույն ժամանակ արտադրության գիտական կազմակերպման վեր-
ջին խոսքն են, որոնք պետք է ընդօրինակի սոցիալիստական Սովետական ռես-
պուբլիկան, որոնք նա պետք է վերամշակի՝ ելնելով, մի կողմից, արտադրության
մեր հաշվառումն ու վերահսկողությունն իրականացնելու շահերից, իսկ ապա,
մյուս կողմից, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու շահե-
րից։ Օրինակ, Թեյլորի[5] նշանավոր սիստեմը, որ մեծ տարածում է ստացել
Ամերիկայում,— նշանավոր է հենց նրանով, որ կապիտալիստական ամենա-

* Դարձվածքի մի մասը բաց է թողնված, գրի առնվածը պարզ չէ։— Խմբ.

սանձարձակ շահագործման վերջին խոսքն է։ Ուստի հասկանալի է, որ այդ
սիստեմը բանվորական մասսաների մեջ այնպիսի մեծ ատելության ու զայ-
րույթի է արժանացել։ Բայց միևնույն ժամանակ մեկ րոպե իսկ չի կարելի մո-
ռանալ, որ Թեյլորի սիստեմը գիտության հսկայական պրոգրես է պարունա-
կում, գիտություն, որ սիստեմատիկորեն վերլուծում է արտադրության պրո-
ցեսը և ուղիներ հարթում մարդկային աշխատանքի արտադրողականությունը
հսկայական չափով բարձրացնելու համար։ Թեյլորի սիստեմի կիրառման կա-
պակցությամբ Ամերիկայում սկսված գիտական հետազոտությունները, հատ-
կապես շարժումների ուսումնասիրությունը, ինչպես ամերիկացիներն են ա-
սում, տվել են հսկայական նյութ, որը հնարավորություն է տալիս աշխատա-
վոր բնակչությանը սովորեցնել ընդհանրապես աշխատանքի և մասնավորա-
պես աշխատանքի կազմակերպման անհամեմատ ավելի բարձր պրիոմներ։

Թեյլորի սիստեմի մեջ բացասականն այն էր, որ այն իրագործվում էր
կապիտալիստական ստրկության պայմաններում և բանվորներից կրկնակի ու
եռակի քանակությամբ աշխատանք քամելու միջոց էր ծառայում, երբ պահ-
պանվում էր նախկին վարձատրությունը, բոլորովին հաշվի չառնելով, թե
վարձու բանվորներն ընդունա՞կ են առանց մարդկային օրգանիզմին վնասելու
տալ աշխատանքի այդ կրկնակի կամ եռակի քանակը, երբ պահպանվում է
աշխատանքային ժամերի նախկին քանակը։ Սոցիալիստական Սովետական
ռեսպուբլիկայի առջև ծառացած է մի խնդիր, որը կարելի է հակիրճ ձևակեր-
պել այսպես, որ մենք Թեյլորի սիստեմը և աշխատանքի արտադրողականու-
թյան ամերիկյան գիտական բարձրացումը պետք է կիրառենք ամբողջ Ռու-
սաստանում, այդ սիստեմը միացնելով աշխատաժամանակը կրճատելու հետ,
արտադրության և աշխատանքի կազմակերպման նոր պրիոմների օգտագործ-
ման հետ՝ առանց որևէ վնաս պատճառելու աշխատավոր բնակչության աշ-
խատուժին։ Ընդհակառակը, Թեյլորի սիստեմի՝ իրենց իսկ աշխատավորների
կողմից ճիշտ ղեկավարվող կիրառումը, եթե նրանք բավականաչափ գիտակից
լինեն, ամբողջ աշխատավոր բնակչության համար պարտադիր աշխատանքա-
յին օրվա հետագա և հսկայական կրճատման ամենահուսալի միջոցը կլինի,
ամենահուսալի միջոց կծառայի, որ մենք բավական կարճ ժամանակամիջոցում
իրագործենք այն խնդիրը, որը կարելի է արտահայտել մոտավորապես այս-
պես. օրական վեց ժամվա ֆիզիկական աշխատանք յուրաքանչյուր չափահաս
քաղաքացու համար և չորս ժամվա աշխատանք՝ պետության կառավարման
համար։

Այդպիսի սիստեմին անցնելը կպահանջի շատ նոր ունակություններ ու
նոր կազմակերպական հիմնարկներ։ Տարակույս չկա, որ այդ անցումը քիչ
դժվարություններ չի պատճառի մեզ և որ այդպիսի խնդրի դրումը առաջ կբե-
րի նույնիսկ տարակուսանք, գուցե և որոշ խավերի դիմադրությունը հենց աշ-
խատավորների շրջանում։ Բայց կարելի է վստահ լինել, որ բանվոր դասա-
կարգի առաջավոր տարրերը կհասկանան այդպիսի անցման անհրաժեշտու-
թյունը և որ ժողովրդական տնտեսության սոսկալի կազմալուծման այն պայ-
մաններով, որ միայն այժմ են դրսևորվել քաղաքների ու գյուղերի համար,
երբ ռազմաճակատից վերադարձել են միլիոնավոր մարդիկ, որոնք կտրված են
եղել տնտեսությունից և առաջին անգամ են տեսնում պատերազմի պատճա-
ռած տնտեսության կազմալուծման ամբողջ չափը, տարակույս չկա,— աշխա-
տավորների հասարակական կարծիքը սվյալ ուղղությամբ նախապատրաստե-



լու համար հող ստեղծված է, և որ այն անցումը, որը մենք մոտավորապես և
մոտավոր չափով նշել ենք վերևում, որպես գործնական խնդիր, կդրվի աշխա-
տավոր դասակարգերի՝ գիտակցաբար ընթացող բոլոր տարրերի կողմից,
որոնք այժմ կանգնել են Սովետական իշխանության կողմը։

## ԳԼՈՒԽ IX

Մատնանշված բնույթի տնտեսական անցումը Սովետական իշխանության
ներկայացուցիչներից ևս պահանջում է համապատասխան փոփոխություններ
մտցնել ղեկավարների ֆունկցիաների մեջ։ Միանգամայն բնական է, որ այն-
պիսի իրադրության մեջ, երբ առաջին տեղն էր մղվում ժողովրդի մեծամաս-
նությանը համոզելու կամ իշխանությունը նվաճելու և շահագործողների դի-
մադրությունը ճնշելու խնդիրը,— միանգամայն բնական է, որ ղեկավարների
շրջանում ևս առաջին տեղն էին քաշվում գերազանցապես մասսաների ագի-
տատորները, մասսաներ, որոնց հետ Սովետական իշխանությունն ավելի սեր-
տորեն է կապված, քան իշխանության որևէ դեմոկրատական ձև նախկինում։
Միանգամայն բնական է, որ բնակչության մեծամասնությանը համոզելու կամ
նրան շահագործողների դեմ ծանր ու դժվարին ռազմական պայքարի գրավելու
համար պահանջվում էին հատկապես ագիտատորական ընդունակություններ։
Ընդհակառակը, այն խնդիրները, որոնք համառոտակի ուրվագծվեցին վերը և
որոնց էությունն է՝ արդյունքների արտադրության և բաշխման հաշվառումն ու
վերահսկողությունը, առաջին տեղն են քաշում արդեն պրակտիկ ղեկավարնե-
րին ու կազմակերպիչներին։ Դրան համապատասխան պետք է կատարվի ղե-
կավարների որոշ վերագնահատում, նրանց որոշ տեղափոխում, քանի որ
նրանց կողմից անհնար է հարմարվել նոր պայմաններին և նոր խնդրին։ Բնա-
կան է, որ նախորդ դարաշրջանի ղեկավար շտաբի համար, որն ընտելացել է
առավելապես ագիտատորական խնդիրներին, շատ դժվար է այդպիսի անցու-
մը։ Բնական է, որ դրա հետևանքով անխուսափելի էին մի ամբողջ շարք սխալ-
ներ։ Եվ այժմ ինչ գնով էլ լինի պետք է հասնել այն բանին, որ ինչպես ղե-
կավարները, այնպես էլ սովետական ընտրողների մասսաները, այսինքն՝ աշ-
խատավոր և շահագործվող մասսաները խսկապես հասկանան այստեղ մատ-
նանշված փոփոխության անհրաժեշտությունը։

Աշխատավոր և շահագործվող մասսաների մեջ կազմակերպչական ավելի
շատ տաղանդներ ու ընդունակություններ կան, քան ագիտատորական տա-
ղանդներ ու ընդունակություններ, որովհետև այդ դասակարգերի աշխատանքա-
յին կյանքի ամբողջ իրադրությունը նրանցից պահանջում էր համատեղ աշխա-
տանք, արդյունքների արտադրության և բաշխման հաշվառում և վերահսկողու-
թյուն կազմակերպելու շատ ավելի մեծ ունակություն։ Ընդհակառակը, կյանքի
նախկին պայմանները բուն մասսաներից շատ ավելի փոքր չափերով էին ա-
ռաջ քաշում ագիտատորի կամ պրոպագանդիստի տաղանդ ունեցող գործիչներ։
Գուցե այդ պատճառով այժմ մենք հաճախ ենք դիտում, որ պրոֆեսիայով կամ
կոչումով ագիտատորներին ու պրոպագանդիստներին վիճակվում է ստանձ-
նել կազմակերպչի խնդիրներ, վիճակվում է յուրաքանչյուր քայլափոխում հա-
մոզվել, որ իրենք քիչ են հարմարված այդ խնդիրները լուծելու համար, վի-
ճակվում է ապրել և՛ հիասթափություն, և՛ դժգոհություն բանվորների ու գյու-

ղացիների կողմից։ Հաճախ կարելի է հանդիպել երկրի՝ հասարակության սո-
ցիալիստական վերակառուցմանը թշնամի դասակարգերի կողմից,— բուրժուա-
կան պարտիաների ներկայացուցիչների կամ նրանց կողմից, որոնք մեղանում
իրենց անվանում են սոցիալիստական, իսկ իրականում սովորաբար փութա-
ջանորեն ծառայում են բուրժուազիային, ինչպես մենշևիկներն ու աջ էսեռնե-
րը, — հաճախ կարելի է հանդիպել նրանց կողմից չարախնդության Սովետա-
կան իշխանության այդ սխալների և անհաջողությունների առթիվ։ Իրականում
որքան պատմականորեն անխուսափելի են եղել այդ սխալները, նույնքան էլ
պարզ է, որ այդ բնագավառի թերությունները սոսկ նոր սոցիալիստական հա-
սարակարգի աճի հիվանդություններն են։ Վերասովորել այնպես, որպեսզի պրակ-
տիկ-ագիտատորը իրեն պատշաճ առաջին տեղում դրվի, այդպես վերասովո-
րել կարելի է, և տարակույս չկա, որ առանց մեծ դժվարության այդպես կկա-
րողանան վերասովորել Սովետական իշխանության ներկայացուցիչները Ռու-
սաստանի բոլոր ծայրերում։ Բայց դրա համար ժամանակ է պահանջվում, և
կատարված սխալների պրակտիկ փորձը միայն ի վիճակի է առաջ բերելու փո-
փոխության անհրաժեշտության պարզ գիտակցություն,— ի վիճակի է առաջ
քաշելու նոր խնդիրների լուծման համար պիտանի մի շարք անձեր կամ նույն-
իսկ դրանց մի ամբողջ խավ։ Բանվորների ու գյուղացիների շրջանում կազմա-
կերպական տաղանդներ, հավանորեն, ավելի շատ կան, քան երևակայում և
պատկերացնում է բուրժուազիան, բայց բանն այն է, որ այդ տաղանդները ոչ
մի հնարավորություն չունեն առաջ քաշվելու, ամրապնդվելու, իրենց համար
դիրք նվաճելու կապիտալիստական տնտեսության պայմաններում։
Եվ ընդհակառակը, եթե մենք այժմ հատակ կերպով հասկանանք պետու-
թյան կառավարման գործին կազմակերպչական նոր տաղանդների լայնորեն
մասնակից դարձնելու անհրաժեշտությունը, եթե մենք,— ելնելով հենց Սովե-
տական իշխանության սկզբունքներից,— այդ բնագավառում սիստեմատիկո-
րեն առաջ քաշենք պրակտիկայով փորձված գործիչներին, ապա մենք կկարո-
ղանանք կարճ ժամանակամիջոցում հասնել այն բանին, որ Սովետական իշ-
խանության զարգացրած սկզբունքների հիման վրա, որոնք նետվում են մաս-
սաների մեջ և ապա մասսաների կողմից իրագործվում սովետական հիմնարկ-
ների՝ մասսային ներկայացնող անդամների վերահսկողությամբ, առաջ կքաշ-
վի արտադրության պրակտիկ կազմակերպիչների նոր խավ, իր համար դիրք
կնվաճի, իրեն պատշաճ ղեկավար տեղ կգրավի։

ԳԼՈՒԽ X

Սովե-
Հարուստների նկատմամբ կիրառվող աշխատանքային պարհակից
տական իշխանությունը պետք է անցնի, իսկ ավելի ճիշտ՝ պետք է միաժամա-
նակ հերթի դնի աշխատավորների, բանվորների ու գյուղացիների մեծամաս-
նության նկատմամբ համապատասխան սկզբունքներ կիրառելու խնդիրը։ Այս-
տեղ աշխատանքային պարհակ մտցնելու խնդիրը ներկայացնում է մի ուրիշ
կողմ։ Այդ խնդրին պետք է այլ կերպ մոտենալ և առաջին պլան քաշել ո՛չ թե
այն, որ պետք է իրագործվի հարուստ դասակարգերի նկատմամբ։ Մեզ համար
անպայման անհրաժեշտություն չկա, որպեսզի գրանցենք աշխատավոր ժողո-
վրդի բոլոր ներկայացուցիչներին, որպեսզի հսկենք դրամանիշների նրանց
պաշարները կամ նրանց սպառումը, որովհետև կյանքի բոլոր պայմանները



բնակչության այդ տարակարգերի հսկայական մեծամասնությանը դատապար-
տում են աշխատելու անհրաժեշտության և, ամենաաղքատիկ պաշարներից
բացի, որևէ այլ պաշար կուտակելու անհնարինության։ Ուստի այդ բնագա-
վառում աշխատանքային պարհակ սահմանելու խնդիրը վեր է ածվում աշ-
խատանքային կարգապահություն և ինքնակարգապահություն հաստատելու
խնդրին։
Կապիտալիստական հին հասարակության մեջ կարգապահությունը աշխա-
տավորների նկատմամբ կապիտալն իրագործում էր սովի մշտական սպառնա-
լիքով։ Եվ քանի որ սովի այդ սպառնալիքը միանում էր անչափ ծանր աշխա-
տանքի և աշխատավորների այն գիտակցության հետ, որ իրենք աշխատում են
ոչ թե իրենց համար, այլ ուրիշի բարօրության համար, ապա աշխատանքի
իրադրությունը վեր էր ածվում արտադրության ղեկավարների դեմ աշխատա-
վորների հսկայական մեծամասնության մշտական պայքարի։ Այդ հողի վրա
անխուսափելի էր այնպիսի հոգեբանության ստեղծումը, որ աշխատավորների
հասարակական կարծիքը ո՛չ միայն չէր հետապնդում վատ աշխատանքը կամ
աշխատանքից խուսափելը, այլ, ընդհակառակը, դրանում տեսնում էր անխու-
սափելի և օրինական բողոք կամ շահագործողի չափից վեր պահանջներին դի-
մադրելու եղանակ։ Եթե այժմ բուրժուական մամուլը և նրա ձայնակիցներն
այնքան շատ են բղավում բանվորների մեջ տիրող անարխիայի մասին, նրանց
սանձարձակության կամ նրանց չափից վեր պահանջների մասին,— ապա այդ
քննադատության չարամիտ բնույթը այնքան ակներև է, որ չարժե նրա վրա
երկար կանգ առնել։ Հասկանալի է, որ այնպիսի մի երկրում, որտեղ բնակչու-
թյան մեծամասնությունն այնպես չլսված սով է քաշել ու տանջվել, ինչպես
Ռուսաստանի բնակչությունը վերջին երեք տարում,— հասկանալի է, որ տրա-
մադրության լիակատար անկման և ամեն մի կազմակերպվածության լիակա-
տար անկման մի ամբողջ շարք դեպքեր միանգամայն անխուսափելի էին։ Այդ
տեսակետից պահանջել արագ անցում կամ հուսալ, որ այդ տեսակետից փո-
փոխության կարելի է հասնել մի քանի դեկրետներով, նույնքան անհեթեթ կլի-
ներ, ինչպես եթե կոչերով փորձեին հոգու առույգություն և աշխատունակու-
թյուն տալ մի մարդու, որին ծեծելով մահվան դուռն են հասցրել։ Միայն Սո-
վետական իշխանությունը, որն ստեղծել են հենց իրենք աշխատավորները և
որը հաշվի է առնում աշխատավոր մասսաների շրջանում տեղի ունեցող առող-
ջացման աճումը, ի վիճակի կլինի այս տեսակետից արմատական փոփոխու-
թյուններ կատարել։
Սովետական իշխանության ներկայացուցիչների շրջանում և նրա կողմ-
նակիցների շրջանում — օրինակ՝ պրոֆեսիոնալ միությունների առաջավոր ղե-
կավարների շրջանում — արդեն լիովին հասունացել է աշխատավորների ինք-
նակարգապահությունը բարձրացնելու համար սիստեմատիկ միջոցառումներ
մշակելու անհրաժեշտությունը։ Կասկած չկա, որ ընդհանրապես կապիտալիս-
տական հասարակության պայմաններում, իսկ ավելի ևս այն կատաղի ու սան-
ձարձակ սպեկուլյացիայի պայմաններում, որ ստեղծեց պատերազմը, բանվոր
դասակարգի մեջ թափանցել է այնպիսի բարոյալքում, որի դեմ լրջորեն պայ-
քարելն անխուսափելի է։ Մանավանդ, որ պատերազմի հետևանքով բանվոր
դասակարգի առաջավոր ջոկատների կազմը ևս փոխվել է ամենևին ոչ դեպի
լավը։ Ուստի աշխատավորների շրջանում կարգապահություն ստեղծելը, աշ-
խատանքի չափի, աշխատանքի ինտենսիվության նկատմամբ վերահսկողու-

թյուն կազմակերպելը, աշխատանքի չափը սահմանելու, այդ չափի ամեն մի չարամիտ խախտում պատասխանատվության ենթարկելու, այդ չափը բարձրացնելու նպատակով մեծամասնության վրա սիստեմատիկաբար ներգործելու համար հատուկ արդյունաբերական դատարաններ մտցնելը,— այս բոլորն այժմ հերթի է դրվում որպես Սովետական իշխանության ամենահրատապ խնդիր։

Ընդսմին հարկավոր է միայն հնարավորին չափ նկատի ունենալ, որ բուրժուական հասարակության մեջ հասարակական դաստիարակության գլխավոր գործիքներից մեկը, այն է՝ մամուլը, բոլորովին չի կատարել իր խնդիրը քըննարկվող բնագավառում։ Եվ մինչև այժմ էլ մեր սովետական մամուլը զգալի չափով դեռևս գտնվում է բուրժուական հասարակության հին սովորույթների ու հին տրադիցիաների տպավորության տակ։ Դա արտահայտվում է ի միջի այլոց այն բանում, որ մեր մամուլը ևս, ինչպես և հին բուրժուական մամուլը*, շարունակում է անչափ մեծ տեղ և ուշադրություն հատկացնել քաղաքականության այն մանրուքներին, քաղաքական ղեկավարության այն անձնական հարցերին, որոնցով բոլոր երկրների կապիտալիստները ջանում էին ժողովրդական մասսաների ուշադրությունը շեղել նրանց կյանքի իսկապես լուրջ, խոր և արմատական հարցերից։

---

1 Վ. Ի. Լենինը Մոսկվայի համագումար է անվանում Սովետների Համառուսաստանյան IV Արտակարգ համագումարը, որը կայացել է 1918 թվականի մարտի 14—16-ը Մոսկվայում։

2 Բոգաևսկի Մ. Պ. (1881—1918)—Դոնի Զորքի զորային ատամանի (գեներալ Կալեդինի) օգնական, կոնտրռևոլյուցիոն «Դոնի կառավարության» անդամ։ 1918 թվականի փետրվարի 7-ին Փոքր զորային շրջանի նիստում հաղորդելով այն պատճառների մասին, որոնք այդ կառավարության անդամներին ստիպել էին վայր դնել իրենց լիազորությունները, իսկ ատաման Կալեդինին՝ ինքնասպանություն գործել, Բոգաևսկին հայտարարեց. «Մենք ոչ մի ռեալ ուժ չունեինք։ Մենք ոչ ոքի վրա չէինք կարող հենվել»։

3 Բեստ նստել՝ նշանակում է թաքնվել այնպիսի տեղում, որը ժամանակավոր անձեռնմխելիություն է տալիս թաքնվածին։

4 Ամբողջ խոշոր արդյունաբերության ազգայնացման դեկրետը Ժողովրդական Կոմիսարների Սովետն ընդունեց 1918 թվականի հունիսի 28-ին։ Այդ նույն դեկրետով հայտարարվում էր բոլոր մասնավոր երկաթուղիների, ինչպես նաև կոմունալ ձեռնարկությունների (ջրամատակարարում, գազի գործարաններ, քաղաքային տրանսպորտ և այլն) ազգայնացում, որոնք հանձնվում էին տեղական Սովետների տնօրինությանը։

5 Թեյլոր (Taylor) Ֆրեդերիկ Ուինսլոու (1856—1915)—ամերիկյան ինժեներ, ինժեներ-մեխանիկների ամերիկյան ընկերության պրեզիդենտ 1905—1906 թվականներին, աշխատանքի կազմակերպման այն սիստեմի հիմնադիրը, որի նպատակն է աշխատանքային օրվա առավելագույն խտացումը և արտադրության միջոցների ու աշխատանքի գործիքների ռացիոնալ օգտագործումը։ Կապիտալիզմի պայմաններում այդ սիստեմն օգտագործվում է աշխատավորներին շահագործելու համար։

---

* Շարունակությունը տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, 4-րդ հրատ., հատոր 27, էջ 237։—Խմբ.

Թարգմ. Տ. ԴԱԴՅԱՆ
Վ. ԱՎԱԳՅԱՆ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԵՎՔԸ

Քառասունհինգ տարի առաջ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան պատմության մեջ բացեց նոր դարագլուխ՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաստատման դարագլուխը: Ժամանակի տեսակետից որքան ավելի ենք հեռանում Հոկտեմբերյան ռևոլյուցիայից, այնքան ավելի վեհանում է այդ ռևոլյուցիան, այնքան ավելի ակնառու է դառնում համաշխարհային պատմական նշանակությունը այն հերոսության, որ կատարեցին լենինյան պարտիան, մեր երկրի բանվոր դասակարգը:

Քառասունհինգ տարի առաջ մարդկության պատմության մեջ առաջին անգամ ծնվեց սոցիալիզմի երկիրը, սկսվեց նոր աշխարհի կառուցումը: Մեծ Հոկտեմբերով սկսվեց մարդկության այն իսկական պատմությունը, որի համեմատությամբ այն ամենը ինչ եղել էր դրանից առաջ, շահագործողական սիստեմի հիմքի վրա խարըսխված նախապատմություն էր միայն: 1917 թվականի հոկտեմբերին դեպի կոմունիզմ սկսված մեծ արշավն օրինաչափորեն հասցրեց ՍՄԿՊ XXII պատմական համագումարին, որը մշակեց կոմունիզմի գործնական կառուցման Ծրագիրը, հանդիսավոր կերպով հռչակեց, որ «Սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք»:

***

1913 թ. գրված «Կարլ Մարքսի ուսմունքի պատմական ճակատագիրը» հոդվածում Վ. Ի. Լենինը տալիս էր XIX դարի կեսերից սկսած համաշխարհային պատմության հետևյալ պերիոդիզացիան. առաջին ժամանակաշրջան՝ 1848 թ. ռևոլյուցիայից մինչև Փարիզյան կոմունան (1871 թ.). երկրորդ ժամանակաշրջան՝ Փարիզյան կոմունայից մինչև 1905 թ. ռուսական ռևոլյուցիան. երրորդ ժամանակաշրջան՝ ռուսական ռևոլյուցիայից սկսած: «Մարքսիզմի երևան գալուց հետո,— եզրակացնում է Վ. Ի. Լենինը,— համաշխարհային պատմության երեք մեծ դարաշըրջաններից ամեն մեկը նրան նոր հաստատումներ և նոր հաղթանակներ բերեց: Բայց մարքսիզմին, իբրև պրոլետարիատի ուսմունքի է՛լ ավելի մեծ հաղթանակներ կբերի գալիք պատմական դարաշրջանը»:

Գալիք դարաշրջանը, որի սկսվելը գիտական ճշմարտացիությամբ կանխատեսում էր Լենինը, արդեն մոտ կես դար է կայմում: Այդ ժամանակվա ընթացքում աշխարհն ավելի շատ է փոխվել, քան նախորդ մի քանի հազար տարիներին: Այդ փոփոխություններից յուրաքանչյուրը նոր հաստատում է բերում մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին: Հիրավի XX դարը դարձավ կոմունիզմի փառավոր հաղթանակների դար:

Կոմունիզմը, որ մի ժամանակ սոսկ երազանք էր, դարձավ արդիականության մեծագույն ուժը, մի հասարակարգ, որը կառուցվում է երկրագնդի հսկայական տարածություններում:

Մեկ միլիարդից ավելի մարդ միավորող ազատ ժողովուրդների ամենասերտ դաշինքը, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում համատեղ ջանքերը միավորող սոցիալիստական սիստեմն այժմ հանդիսանում են արդի դարաշրջանի վճռական գործոնը, որը հարաճուն ազդեցություն է ունենում համաշխարհային ամբողջ զարգացման վրա՝ հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի շահերի:

Սոցիալիզմն արմատապես վերափոխեց մեր երկրի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսությունը: 1961 թ. սոցիալիստական երկրները 1937 թվականի մակարդակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքն ավելացրին ավելի քան 7 անգամ, այն ժամանակ, երբ կապիտալիստական սիստեմի երկրների արդյունաբերական արտադրանքն ամբողջությամբ վերցրած աճեց ընդամենը 2,5 անգամ: Վերջին չորս տարում (1958—1961) սոցիալիստական լագերի երկրներում արդյունաբերական արտադրանքի աճը կազմեց տարեկան մոտ 13 տոկոս, մոտավորապես երեք անգամ գերազանցելով կապիտալիստական երկրների արդյունաբերական զարգացման միջին տարեկան տեմպերը: Սոցիալիստական երկրներում տընտեսության մեջ անհամեմատ աճել է արդյունաբերության տեսակարար կշիռը, որը միջին հաշվով ներկայումս կազմում է 75 տոկոս:

1961 թվականին սովետական մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերությունը 350 անգամ ավելի արտադրանք, 160 անգամ ավելի էլեկտրաէներգիա թողարկեց, քան 1913 թվականին: ՍՍՌՄ-ն այժմ արտադրում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեկ հինգերորդը, որն ավելի է, քան միասին վերցրած Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Կանադայի, Ճապոնիայի, Բելգիայի և Նիդեռլանդիայի արտադրանքը: Արդյունաբերական արտադրանքի թողարկմամբ աշխարհում գրավելով երկրորդ տեղը, մեր երկիրը վստահորեն հասնում է ամենազարգացած կապիտալիստական պետությանը՝ ԱՄՆ-ին: 1921 թվականին ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքը կազմում էր ԱՄՆ-ի արտադրանքի ծավալի միայն 2 տոկոսը, 1932 թ.՝ արդեն 19 տոկոսը, 1940 թ.՝ 28 տոկոսը, 1953 թ.՝ 34 տոկոսը, իսկ 1961 թ.՝ ավելի քան 60 տոկոսը: Սովետական Միությունն այժմ արտադրանքի մի շարք կարևոր տեսակների գծով գերազանցում է ԱՄՆ-ին:

Անճանաչելիորեն վերափոխվել է մեր երկրի գյուղատնտեսությունը: Այն այժմ խոշոր մեքենայացված տնտեսություն է: ՍՍՌՄ-ը դարձել է համատարած գրագիտության, բարձր կուլտուրայի, առաջավոր գիտության ու տեխնիկայի երկիր: Տիեզերքի նվաճման գործում սոցիալիզմի երկրի համաշխարհային պատմական նվաճումներն ակնառու կերպով վկայում են այն մասին, որ հաղթանակը տիեզերքում՝ դա նոր հասարակարգի՝ սոցիալիզմի, կոմունիզմի հաղթանակն է:

Տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում աննախընթաց հաջողությունների են հասել ազգային ռեսպուբլիկաների՝ նախկինում տնտեսապես ծայրահեղ հետամնաց ժողովուրդները: Այդ բանի փայլուն ապացույցն այսօրվա Սովետական Հայաստանի իրականությունն է: Հայ ժողովուրդը կոմունիստների պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Միության եղբայրական ժողովուրդների օգնությամբ պատմական կարճ ժամանակում Հայաստանը դարձրեց բարձր զարգացած տնտեսություն ու կուլտուրա ունեցող, համատարած գրագիտության, դեպի կոմունիզմի լուսաշող բարձունքներն ընթացող ռեսպուբլիկա: Թվերն անգամ անկոր



են տալու այն մեծ փոփոխությունների ու նվաճումների պատկերը, որ կատարվել է հայ ժողովրդի կյանքում:

Սովետական Միության հաջողությունները դառնորեն խոստովանում են նույնիսկ բուրժուական աշխարհի այն թերահավատները, որոնք ժամանակին մեր երկրին միայն անհաջողություն և կործանում էին գուշակում: Լոնդոնի «Թայմսը», հիշելով անցյալը, գրել է. «Երբ գրոհում էին Ձմեռային պալատը, իսկ Սովետների Համառուսական համագումարը հավաքվել էր այն բանի համար, որպեսզի հռչակի հաղթանակը, ռուսական օրացույցը ցույց էր տալիս հոկտեմբերի 25-ը: Ռուսաստանն այն ժամանակ 13 օրով ետ լինելով արևմտյան օրացույցի համեմատությամբ, 100 տարով ետ էր Արևմուտքից արդյունաբերական զարգացումով և, համենայնդեպս, 150 տարով ետ էր քաղաքական ու սոցիալական ստրուկտուրայով»: Իսկ այ՞ժմ: Այս հարցին բնորոշ պատասխան է տվել ճապոնական բուրժուական «Ասախի» թերթը. «Սովետական Միությունն ամբողջ աշխարհի առջև ցուցադրեց գիտության և տեխնիկայի բնագավառում իր պետական սիստեմի գերազանցությունը: Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ մրցակցային պայքարում ամբողջ աշխարհի առջև Սովետական Միությունը գործնականում ապացուցեց իր ամբողջ հզորությունը»:

Կոմունիստները պատերազմ չեն ուզում: Մեր երկրի քառասունհինգամյա գոյությունը խաղաղության համար անխոնջ ու հետևողական պայքարի պատմությունն է: Կոմունիստները վստահ են, որ առանց պատերազմի, խաղաղ գոյակցության պայմաններում սոցիալիզմը հաղթանակ կտանի կապիտալիզմի նկատմամբ: Այժմ սոցիալիզմն ավելի վիթխարի խնդիր է դնում. ապահովել գերազանցությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ համաշխարհային արտադրության մեջ, հասարակական աշխատանքի արտադրողականությամբ, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրներին և ապահովել աշխարհում ամենաբարձր կենսամակարդակ մեր ժողովրդի համար:

Մարքսիստական-լենինյան տեսության, հասարակական զարգացման օրենքների խոր իմացությունը, ստեղծագործական վերաբերմունքը տեսության նկատմամբ մեր պարտիային հնարավորություն տվեցին, հենվելով ձեռք բերված հաջողությունների վրա, իր Ծրագրում նախատեսել առաջիկա 20 տարում ՍՍՌՄ-ի զարգացման գիտականորեն հիմնավորված պլան: Դա պատմության մեջ չտեսնված վիթխարի պլան է, որի իրագործումով Սովետական Միությունը ետ կթողնի բոլոր կապիտալիստական երկրներին, այդ թվում ԱՄՆ-ին:

Ստեղծագործական մեծ աշխատանքը մեր երկրում, որ տեղի է ունենում լենինյան պարտիայի՝ «Ամեն ինչ մարդու համար» նշանաբանով, ուղղված է մեկ նպատակի. բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը: Կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրները մասսաների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության հետագա զարգացում են պահանջում. մարդկանց նոր միլիոններ են մասնակցում պետական գործերի և արտադրության կառավարմանը, մեծանում է պարտիայի, Սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և աշխատավորների մյուս կազմակերպությունների դերը: Կոմունիստական պարտիան իր պարտքն է համարում անշեղորեն ընդլայնել կապերը մասսաների հետ, մշտապես խորհրդակցել ժողովրդի հետ, ամեն կերպ զարգացնել նրա եռանդն ու նախաձեռնությունը: Դրանում է նա տեսնում կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրների հաջող լուծման կարևորագույն պայմանը:

Այն միտքը, որ կոմունիզմն ստեղծվում է աշխատավոր ժողովրդի կողմից, որ նա ամեն օր և ամեն ժամ ծնվում է գործարանների ցեխերում, կոլտնտեսային

դաշտերում, գիտական լաբորատորիաներում կարմիր թելի պես անցնում է մեր պարտիայի Ծրագրի միջով: ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն վիթխարի կազմակերպական աշխատանք է ծավալել կենսագործելու Ծրագրի նախագծումները: Մեր երկիրը մի անծայրածիր շինարարական հրապարակ է, որտեղ եռում է կյանքը, որտեղ սովետական մարդկանց ջանասեր, ստեղծագործական աշխատանքով օր օրի լայն ծավալ է ստանում կոմունիստական վիթխարի շինարարությունը:

Սովետական մարդիկ գիտակցում են, որ քսանամյա պլանի իրագործումը նրանցից մեծ ջանքեր և լարված աշխատանք է պահանջում: Այն ռեալ կդառնա միայն սովետական յուրաքանչյուր մարդու ստեղծագործական աշխատանքով: Եվ մեծ նպատակի համար պետք է լավ աշխատել: Աշխատանք, աշխատանք և նորից աշխատանք՝ ահա կոմունիզմ կառուցողների դևիզը, նրանց սրբազան պարտականությունը, ահա միակ ուղին՝ դեպի ՍՄԿՊ Ծրագրով նախատեսված հոյակապ պլանների կենսագործումը:

Սովետական մամուլի էջերում Նադեժդա Զագլադայի ելույթը ջերմ ընդունելություն գտավ ո՛չ միայն գյուղատնտեսության աշխատողների, այլև արդյունաբերության աշխատողների մոտ, սովետական ինտելիգենցիայի շրջանում, արդյունաբերական ձեռնարկությունների և սովետական հիմնարկների ղեկավարների ու ծառայողների, սովետական բոլոր մարդկանց մոտ: Զագլադայի բարձրացրած հարցերը՝ ազնվությունը, բարեխղճությունը, ձգտումը՝ ամեն մի գործ կատարել այնպես, որ չկարմրել ո՛չ միայն իր, այլև ժողովրդի առջև, վերաբերում են կոմունիստական հասարակարգի բոլոր կառուցողներին: Ինչպես «Պրավդայում» գրում է 1898 թ. ՍՄԿՊ անդամ Կարպինսկին «Տոնի նախօրյակին *գեղջկուհին* առաջ է քաշում կոմունիստական շինարարության այնպիսի պրոբլեմներ, որոնց պարտիան տալիս է *համաժողովրդական նշանակություն, պետական կարևորություն:* Ֆիզիկական աշխատանքի մարդը, ինչպես ասում են, «առանց արտադրությունից կտրվելու» հանդես է գալիս որպես միլիոնավոր մարդկանց, ո՛չ միայն կոլտնտեսականների, այլև բանվորների, ինժեներների, գիտնականների, հասարակական գործիչների իսկական գաղափարական ղեկավար»: Զագլադայի կոչն արձագանք է գտել մեր երկրի բոլոր անկյուններում: Սովետական մարդիկ նախահոկտեմբերյան մրցության մեջ հերոսական աշխատանքի նոր օրինակներ են դրսևորում, իրենց անխոնջ գործունեությամբ արագացնում լուսապայծառ գալիքի հաղթանակը:

Այն խանդավառությունը, որով կենսագործվում է կոմունիզմի կառուցման Ծրագիրը, կոմունիստական աշխատանքի համար օրեցօր ծավալվող շարժումը, լենինյան պարտիայի ամենօրյա ղեկավարությունը լրիվ հիմք են տալիս ասելու, որ կոմունիզմի կառուցման խնդիրները կկատարվեն նախատեսված ժամկետներում:



Կ. Մարքսը Փարիզի Կոմունայի մասին գրել է, որ նրա սոցիալական մեծ միջոցառումը հենց իր սեփական գոյությունն էր, նրա գործունեությունը: Մեծ Հոկտեմբերի ծնունդը հանդիսացող Սովետական Միության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյությունը, նրանց համակողմանի ու ամենախոր վերափոխիչ գործունեությունը հենց մեր դարաշրջանի ամենամեծ «սոցիալական միջոցառումն» է, համաշխարհային պատմության հզոր շարժիչը:

Հիրավի, այսօր սոցիալիստական սիստեմն իր գոյությամբ անգերազանցելի ազդեցություն է գործում հօգուտ սոցիալիզմի, համաշխարհային ամբողջ կարգացման ընթացքի վրա: Կապիտալիզմի կապանքները փշրած և գիտական կոմունիզմի դրոշի ներքո նոր հասարակարգ կառուցող մարդկության մեկ երրորդն իր օրինակով դյուրացնում է կապիտալի աշխարհի իր դասակարգային եղբայրների հաղթանակը: Լենինի այն միտքը, որ մենք մեր տնտեսական քաղաքականության հաջողություններով պետք է ազդենք համաշխարհային կարգացման ընթացքի վրա, գործնականում հաստատվում է կյանքում:



Սոցիալիստական սիստեմի աննախընթաց հաջողությունները մարդկային գործունեության բոլոր բնագավառներում՝ հուժկու ազդեցություն են թողնում աշխարհի բոլոր ժողովուրդների վրա, մեծացնում կոմունիզմի հմայքը, նրանց ցույց տալիս սոցիալական ազատության ու առաջադիմության ճիշտ ուղին: Սոցիալիստական երկրների սրընթաց առաջադիմությունը, կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարի ճակատի ընդլայնումը, պատմական ակտիվ ստեղծագործության մեջ միլիոնավոր մարդկանց, հատկապես նախկին գաղութների ժողովուրդների ներգրավումը, գիտության ու տեխնիկայի արագ վերելքը՝ այս ամենը հսկայական չափով ընդլայնում են մարդկանց հասարակական-պրակտիկ գործունեությունը, նպաստում նրանց կողմից կապիտալիստական սիստեմի օրգանական արատների գիտակցմանը և կոմունիստական գաղափարների ընկալմանը: Բոլորովին էլ պատահական չէ, որ մեր պարտիայի նոր Ծրագիրը և ՍՄԿՊ XXII համագումարի մյուս նյութերը 220 միլիոն տպաքանակով հրատարակվել են աշխարհի 75 երկրներում: Կապիտալի երկրների ավելի ու ավելի մեծ թվով աշխատավորներ են գալիս այն եզրակացության, որ կոմունիստները միակ քաղաքական ուժն են, որ մինչև վերջ նվիրված են ժողովրդին, պայքարում են նրա երջանկության համար և որ պետք է ընթանալ կոմունիստների հետևից:

Ահա թե ինչու ստվարանում են աշխարհի 88 երկրներում գործող կոմունիստական պարտիաների շարքերը: Վերջին քառասուն տարում ամբողջ աշխարհում կոմունիստների թիվն ավելացել է 100 անգամ և կազմում է քառասուն միլիոն մարդ: Չնայած իմպերիալիստական ռեակցիայի անսքող և սանձարձակ հակակոմունիստական քաղաքականությանը, կոմունիստական պարտիաների ազդեցությունն անշեղորեն աճում է:

Այն երեսուն կապիտալիստական պետություններում, որտեղ կոմպարտիաները գործում են լեգալ պայմաններում ու մասնակցում ընտրություններին, ավելի քան 35 միլիոն մարդ քվեարկում են կոմունիստների օգտին: Վերջին տարիների փորձը վկայում է, որ կոմպարտիաների շարքերն աճում են ոչ միայն սուր ճգնաժամերի և հասարակական մեծ ցնցումների ժամանակ, այլև համեմատաբար «հանգիստ» տարիներին, կապիտալիստական երկրներում տնտեսական բարձր կոնյունկտուրայի պայմաններում: Դա նշանակում է, որ սկսվել է մի ժամանակաշրջան, երբ կոմպարտիաների ճիշտ քաղաքականության դեպքում, անկախ տնտեսական կարգացման բարոմետրի տատանումներից, տեղի է ունենում կոմունիզմի ուժեղացում:

Ընդլայնվում են առանց պատերազմի սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորությունները կապիտալի աշխարհի տարբեր երկրներում: Կուբայի հերոս ժողովուրդն իր փորձով հաստատում է դրա ռեալականությունը: Կուբայի փորձը նաև ցույց է տալիս, որ ռևոլյուցիան կարող է հաղթել ո՛չ միայն սոցիալիստական լագերին տերիտորիայով հարող, այլև նրանից հեռու գտնվող երկրներում: Ռևոլյուցիայի արտահանման մասին իմպերիալիստական պրոպագանդայի ճիչերը ազդեցություն կարող են ունենալ միայն գործից անտեղյակ մարդկանց վրա: Սոցիալիզմի կառուցման ուղին բռնած Կուբային սոցիալիստական երկրների բազ-

մակողմանի օգնությունը՝ ռևոլյուցիայի արտահանում չէ, այլ ինտերնացիոնալ օգնություն ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգություններից սոցիալիզմի գործը պաշտպանելու համար: Կոմունիզմի դրոշը պարզած Կուբայի և սոցիալիստական մյուս երկրների դեմ ուղղված ԱՄՆ-ի կառավարության ու ամերիկյան ռազմամոլների նոր պրովոկացիոն գործողությունները և ագրեսիվ դիտավորությունները դատապարտված են ձախողման և չեն կարող կասեցնել մեր հաղթական առաջընթացը:

Ընդլայնվում է քաղաքական անկախություն նվաճած կամ իրենց ազգային ազատագրության համար պայքարող երկրների կոմպարտիաների ազդեցությունը մասսաների վրա, աճում են նրանց շարքերը: Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Ասիայի, Մերձավոր և Միջին Արևելքի երկրների մեծամասնությունում, Լատինական Ամերիկայում, չխոսելով արդեն Աֆրիկայի մասին, կոմունիստական շարժումը գտնվում էր սաղմնային վիճակում: Այժմ պատկերը փոխվել է: Կոմունիստական գաղափարների ուժեղացման մասին են վկայում թեկուզ և այս թվերը: Եթե 1939 թ. Ասիայի կապիտալիստական երկրներում կոմունիստների թիվը 20 հազար էր, 1957 թ. 1 միլիոն 700 հազար, ապա 1960 թ. 2,5 միլիոն մարդ: Լատինական Ամերիկայում կոմունիստների թիվն այժմ կազմում է 250 հազար մարդ, իսկ Աֆրիկայում՝ 50 հազար: Կապիտալի երկրներում կոմունիստներն ընթանում են գործադուլային պայքարի առաջին շարքերում, ղեկավարում աշխատավորների մարտական գործողությունները:

Կոմունիստական պարտիաների ճկուն քաղաքականության շնորհիվ կապիտալի երկրներում այժմ ստեղծվել են հակամոնոպոլիստական և հակաիմպերիալիստական ճակատի ստեղծման լայն հնարավորություններ: Ժողովրդական մասսաների հանուն խաղաղության, լրիվ ու ընդհանուր զինաթափման և ռազմական ավանտյուրաների, սպառազինությունների մրցավազքի իմպերիալիստական քաղաքականության դեմ մղվող պայքարը գլխավորող կոմունիստներն իրենց կողմն են գրավում միլիոնավոր և միլիոնավոր մարդկանց համակրանքը:

Կայուն խաղաղությունը—կոմունիզմի իդեալն է: Խաղաղության համար պայքարը բոլոր կոմունիստական պարտիաները համարում են իրենց առաջնահերթ խնդիրը: Ներկա էտապում կոմունիստական պարտիաների հիմնական ջանքերն ուղղված են ժողովրդական մասսաներին խաղաղության պայքարի մեջ ներգրավելու նպատակին: Այդ նպատակով կապիտալիստական երկրների կոմպարտիաները մըշտապես մերկացնում են նոր պատերազմի հրձիգներին, պահանջում դադարեցնել սպառազինությունների մրցավազքը, արգելել ատոմային և ջրածնային զենքի փորձարկումներն ու կիրառումը, անխոնջ կերպով պայքարում են հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության համար:

Սովետական ժողովուրդը, սոցիալիստական երկրների ժողովուրդները, աշխարհի բոլոր կոմունիստներն ու առաջադեմ մարդիկ նոր հաջողություններով են նշում Մեծ Հոկտեմբերի փառապանծ տոնը, կոմունիզմի գաղափարների անպարտելիության մեծ տոնը: Մարքսիզմ-լենինիզմը նոր հաղթանակներ է տանում, որովհետև արտահայտում է բանվոր դասակարգի, մարդկության այն հսկայական մեծամասնության կենսական շահերը, որը ձգտում է խաղաղության, ազատության և առաջադիմության:

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նորանոր հաջողություններով նշելով Մեծ Հոկտեմբերի քառասունհինգ և Հայաստանում սովետական կարգերի հաստատման քառասուներկուերորդ տարեդարձները, անդուլ աշխատանքով շարունակում են իրագործել կոմունիզմի կառուցման վեհ կանխագծումները:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԵՎՐՈՊԱԿԱՆ «ԻՆՏԵԳՐԱՑԻԱՅԻ» ՆԵՐՀԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Թերևս ոչինչ այնպես ընդհանրացված և ամբողջական ձևով չի արտացոլում ժամանակակից կապիտալիզմի դժվարությունները ու հակասությունները, ինչպես «ինտեգրացիայի» գաղափարը: Եվրոպայի «ինտեգրացիայի» (միավորման) տակ հասկացվում է արևմտաեվրոպական երկրների միաձուլումը մեկ, ամբողջական, վերազգային տնտեսական, քաղաքական և ռազմական օրգանիզմի մեջ: «Ինտեգրացիան» որպես օբյեկտիվ երևույթ արդի ժամանակաշրջանի պատմական զարգացման ծնունդ է և արտացոլում է ժամանակակից կապիտալիստական տնտեսության ներսում տեղի ունեցող զգալի փոփոխությունները:*

*ՍՄԿԿ Ծրագիրն ընդգծում է, որ արդի դարաշրջանի բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցումն է համաշխարհային մասշտաբով: Այդ անցումը տեղի է ունենում գիտա-տեխնիկական ռևոլյուցիայի, սոցիալիզմի հարաճուն հաջողությունների և գաղութակալության կործանման միասնական պրոցեսի ձևով, որը կապիտալիզմին կանգնեցրել է անլուծելի պրոբլեմների առջև: Հետևապես «ինտեգրացիան» երկու սիստեմների մրցության մեջ կապիտալիզմի կրած դժվարությունների ծնունդն է, մի տեսակ պատասխան «կոմունիստական մրցահրավերին»: Իմպերիալիզմը «ինտեգրացիայից» կառչում է որպես ունիվերսալ փրկարար միջոցի՝ ձգտելով ստեղծել կապիտալիստական երկրների ռեակցիոն ալյանս, մի նոր «սրբազան միություն»՝ ուղղված սոցիալիզմի, բանվորական, համադեմոկրատական շարժման և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դեմ:*

*Մյուս կողմից արտադրողական ուժերի աճը, արտադրության ու կապիտալի կենտրոնացումն ու համակենտրոնացումը մղում են դեպի «ինտեգրացիա», այսինքն՝ դեպի ազգային-տնտեսական միջնորմների լիակատար վերացում, ծնելով տնտեսական կապերը զարգացնելու տենդենց՝ ընդհուպ մինչև միաձուլում՝ մոնոպոլիստական կապիտալի միջպետական միավորումների ձևով: «Արևմտաեվրոպական «ինտեգրացիան»— դա մոնոպոլիստական կապիտալի փորձն է տնտեսության մասնավոր կապիտալիստական ձևը «հաշտեցնել» արտադրողական ուժերի հետ, որոնք գերաճել են ազգային սահմանները: Իմպերիալիզմը ձգտում է պետական-մոնոպոլիստական շրջանակներում պահել արտադրողական ուժերը, որոնք հրամայողաբար թելադրում են անցնել սո-*

ցիալիզմին» («Мировая экономика и международные отношения», № 9, 1962 г.):

Գաղութային սիստեմի փլուզումը և սոցիալիստական երկրների նկատմամբ առևտրական խտրականության քաղաքականությունը սրել են շուկաների պրոբլեմը կապիտալիստական երկրների համար: Արտադրության և իրացման դժվարությունները մղում են մոնոպոլիաներին դեպի «ինտեգրացիան», որը համաշխարհային կապիտալիստական շուկայի բաժանման և վերաբաժանման պետական կապիտալիստական նոր եղանակ է: Այսպիսով, «ինտեգրացիան» ո՛չ թե իմպերիալիստական տերությունների միջև համերաշխության, այլ հակասությունների և մրցակցության խորացման արդյունք է:

## «ԽՆՑԳԵՏԻՆՆԵՐՈՎ ԼԵՑՈՒՆ ՑԱՆՑ»

Կապիտալիստական «ինտեգրացիայի» աշխարհագրական սահմաններն առայժմ ընդգրկում են այսպես կոչված «փոքր Եվրոպան» կամ «վեցյակը»՝ Ֆրանսիան, ԳՖՌ-ն, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը, որոնց բաժինը կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի մեջ 1961 թվականին կազմում էր 20,1 տոկոս:

Այս վեց երկրները 1957 թվականի մարտի 25-ին Հռոմում պայմանագիր ստորագրեցին՝ իրենց ազգային շուկաները միավորելու մասին: Ստեղծվեց Եվրոպական տնտեսական համագործակցությունը (ԵՏՀ) կամ «ընդհանուր շուկան»:

Հռոմի պայմանագիրը նախատեսում էր վեց երկրների միջև կատարվող առևտրում աստիճանաբար վերացնել բոլոր մաքսային միջնորմները և քանակային սահմանափակումները, կազմակերպել նրանց կապիտալների և բանվորական ուժի ազատ տեղաշարժ «ընդհանուր շուկայի» ներսում, իսկ նրանցից դուրս գտնվող երկրների նկատմամբ վարել միասնական առևտրական քաղաքականություն և սահմանել բարձր մաքսային տարիֆ: Պայմանագիրը նախատեսում էր նաև համաձայնեցված քաղաքականություն գյուղատնտեսության, տրանսպորտի, ծառայությունների, բանվորական ուժի վճարման հարցերում՝ ընդհուպ մինչև աշխատավարձերի ազգային մակարդակների համահարթումը և սոցիալական օրենսդրության ու հարկային սիստեմի ունիֆիկացիան:

Այսպիսով, «ընդհանուր շուկան» շուկաների լոկ մեխանիկական միավորում չէ, այլ տնտեսական գործունեության գրեթե բոլոր բնագավառներն ընդգրկող քաղաքականություն: Ավելին, նա առայժմ ունի առավելապես, բայց ոչ բացարձակապես տնտեսական նշանակություն: Այդ կապակցությամբ «ընդհանուր շուկայի» հանձնաժողովի նախագահ Վալտեր Հալշտեյնն ասում է. «Մեր համագործակցությունը, իր տնտեսական բոլոր հետևանքներով և տնտեսական նշանակությամբ, ըստ էության քաղաքական համագործակցություն է ինչպես իր նպատակներով, այնպես էլ կառուցվածքով ու իր ֆունկցիաներով»:

ԵՏՀ-ն այս տարվա հունվարի մեկից թևակոխեց իր գործունեության երկրորդ էտապը: Անցած չորս և կես տարիների ընթացքում «ընդհանուր շուկայի» ներսում մաքսային տարիֆներն իջեցվեցին. արդյունաբերական ապրանքներինը՝ 40, գյուղատնտեսական ապրանքներինը՝ 30—35 տոկոսով, վերացվեցին ապրանքաշրջանառության քանակային սահմանափակումները: 1961 թվականին



անցկացվեց արտաքին աշխարհի նկատմամբ «ընդհանուր շուկայի» երկրների մաքսային տարիֆների առաջին մերձեցումը՝ միասնական արտաքին տարիֆի անցնելու համար: Հուլիսի մեկից սկսվեց ընդհանուր գյուղատնտեսական շուկայի ստեղծումը: Այս և մի քանի այլ միջոցառումների իրագործումն իր ազդեցությունը թողեց «ընդհանուր շուկայի» երկրների տնտեսության զարգացման վրա:

Սակայն 1962 թվականի սկզբից «ընդհանուր շուկայի» երկրներում սկսել են իջնել արտադրության աճի տեմպերը: «Ինտեգրացիան» չկարողացավ փոխել կապիտալիստական արտադրության ցիկլային բնույթը: Նա ո՛չ միայն չլուծեց շուկաների հարցը, այլ է՛լ ավելի սրեց մրցակցությունը կապիտալիստական աշխարհում: «Ընդհանուր շուկան» հանդիսացավ կապիտալիստական երկրների թռիչքաձև զարգացման ցայտուն օրինակ:

«Ընդհանուր շուկայի» երկրների զարգացման տեմպերի միջև կա զգալի տարբերություն: Առավել բարձր տեմպերով զարգանում է Արևմտյան Գերմանիան: 1961 թվականին Արևմտյան Գերմանիային բաժին էր ընկնում «ընդհանուր շուկայի» ողջ արդյունաբերական արտադրանքի 44,7, պողպատի ձուլման 45,8, ցեմենտի արտադրության 40,4, էլեկտրաէներգիայի արտադրության 42, ավտոմոբիլների 51,3 և արտահանության 39,3 տոկոսը: Թռիչքաձև զարգացումը սրել է պայքարը և մրցակցությունը «ընդհանուր շուկայի» երկրների միջև: Առանձնապես ուժեղ է ֆրանս-գերմանական մրցակցությունը՝ «ընդհանուր շուկայում» և հետևապես եվրոպական մայր ցամաքում գերիշխող դիրք գրավելու համար: Անշուշտ այս հարցում Արևմտյան Գերմանիայի ինչպես տնտեսական, այնպես էլ ռազմա-քաղաքական նախադրյալները շատ ավելի նպաստավոր են: Ֆրանս-գերմանական մերձեցումը, որը երկուստեք հետապնդում է ռազմա-քաղաքական ուրույն նպատակներ, անկարող է ազդել «ընդհանուր շուկայի» այդ առավել հիվանդոտ կողմը: Հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի ողջագուրանքների նպատակը «բարեկամական» գրկում մեկը մյուսին խեղդելն է: Զպետք է մոռանալ, որ այդ մերձեցման խնդիրներից մեկն էլ Եվրոպայում անգլիական գերիշխանության չեզոքացումն է, գերիշխանություն, որը միշտ կառուցվել է ֆրանս-գերմանական հակամարտության վրա: Սրվում են հակասությունները նաև մի կողմից՝ Ֆրանսիայի ու Գերմանիայի, իսկ մյուս կողմից՝ Իտալիայի միջև: Այսպես, փորձելով դիմադրել արևմտագերմանական և ֆրանսիական մոնոպոլիաների ճնշմանը, Իտալիան սկսել է Անգլիայի հետ մերձենալու ուղիներ որոնել: Նա ստանձնել է միջնորդի դեր՝ ամեն կերպ Անգլիային հրահրելով մտնել «ընդհանուր շուկայի» մեջ, հուսալով դրանով չեզոքացնել ֆրանս-գերմանական հեգեմոնիան և ԵՏՀ-ի ներսում ստեղծել իր այդ երկու ուժեղ պարտնյորների ճնշմանը հակակշռող կործոն:

Առավել դժվար կացության մեջ են գտնվում Բենիլյուքսի երկրները: Նրանց չի հաջողվում խուսափել նման դեպքերում կապիտալիստական մեծ և փոքր երկրների հարաբերություններին բնորոշ պրոբլեմներից: «Ընդհանուր շուկայի» ներսում չի գործում իրավահավասարության սկզբունքը: Նրա օրգաններում խոշոր երկրներն ունեն ավելի մեծ թվով ներկայացուցիչներ և որոշումներն ընդունվում են ո՛չ թե միաձայնության, այլ պարզ մեծամասնության սկզբունքով: Այս պայմաններում Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը իրենց խոշոր պարտնյորների շահադիտական մրցախաղում խաղալիք են

պառնում։ Ահա թե ինչու, հետևելով Իտալիայի օրինակին, նրանք միջոցներ են որոնում «ընդհանուր շուկայի» ներսում ուժերի կայուն հավասարակշռություն ստեղծելու համար։

«Ինտեգրացված» Եվրոպայի ներսում երբեմն հակասությունները սրվում են այն աստիճան, որ սկսում են խոսել «համագործակցության ճգնաժամի» մասին։ Չկա Հռոմի պայմանագրով նախատեսված միասնական գործունեության որևէ բնագավառ, որը չհանդիսանա մշտական կոնֆլիկտների առարկա։ Ահա թե ինչու «ընդհանուր շուկայի» ներքին վիճակը բնութագրելիս այն հաճախ համեմատում են «խեցգետիններով լեցուն ցանցի» հետ։

Եվրոպայի «ինտեգրացիայի» ամենախճճված և հակասական պրոբլեմներից մեկը, որը կարևոր նշանակություն ունի նրա ապագայի համար, Մեծ Բրիտանիայի «ընդհանուր շուկային» միանալու հարցն է։

## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԱՌՅՈՒԾԻ ՎԱՐԱՆՈՒՄՆԵՐԸ «ԸՆԴՀԱՆՈՒՐ ՇՈՒԿԱՅԻ» ՎԱՆԴԱԿԻ ԱՌՋԵՎ

Անտարակույս, չի կարելի Մեծ Բրիտանիան պատկերացնել «ընդհանուր շուկայից» լիովին մեկուսացած վիճակում։ Նա «վեցյակի» հետ ո՛չ միայն առևտրական կապերով է կապված, այլև անգլիական մոնոպոլիաներից շատերը կապիտալ ներդրումներ ունեն «ընդհանուր շուկայի» երկրներում։ Սակայն ԵՏՀ հետագա մաքսային քաղաքականությունն իր շրջանակներից դուրս գտնվող երկրների հանդեպ խիստ դժվարացնելու է Անգլիայի համար արևմտաեվրոպական շուկայից օգտվելու պայմանները։ Այս հանգամանքը անգլիական կառավարող շրջաններին ստիպում է լուրջ խորհել։

Եվրոպական «ինտեգրացիայի» նկատմամբ Անգլիայի քաղաքականությունն ունի իր էվոլյուցիան։ Սկզբում նա փորձեց նորածին «ընդհանուր շուկան» խեղդել՝ տարրալուծելով այն «ազատ առևտրի մեծ գոտու» մեջ։ 1957 թվականի հոկտեմբերին Տնտեսական համագործակցության եվրոպական կազմակերպության ժողովում[1] Անգլիան առաջարկեց ստեղծել ազատ առևտրի գոտի՝ 18 երկրների մասնակցությամբ։ Անգլիական պլանը պահանջում էր «ազատ առևտրի գոտու» ներսում մաքսային սահմանների վերացում, բայց դեմ էր արտաքին աշխարհի հետ կատարվող առևտրում միասնական մաքսային տարիֆ հաստատելուն։ Անգլիային անհրաժեշտ էր պահպանել իր յուրօրինակ առևտրա-տնտեսական հարաբերությունները Ազգերի բրիտանական համագործակցության երկրների հետ և փրկել, այսպես կոչված, կայսերական պրեֆերենցիաները՝ գերադասելի (արտոնյալ) մաքսային տարիֆները համագործակցության երկրների հետ կատարվող առևտրում։ Միաժամանակ նա ազատ մուտք կգործեր արևմտաեվրոպական շուկա։

Ինչպես պետք էր սպասել, 1958 թվականին «ընդհանուր շուկայի» երկրների մինիստրների խորհուրդը մերժեց անգլիական պլանը։ Մինչ այդ «ընդհանուր շուկայում» սկսեցին իջեցնել մաքսային տարիֆները։ Դա նշանակում էր տնտեսական հարձակում Անգլիայի դեմ։ Վերջինս իր հերթին անցավ հակահարձակման։

1 ՏՀԵԿ-ն ստեղծվել է 1947 թ. ԱՄՆ-ի պահանջով՝ «Մարշալի պլանով» ստացվող «օգնությունը» բաշխելու և օգտագործելու նպատակով։ Սկզբում նրա մեջ մտնում էին Եվրոպայի 17 կապիտալիստական երկրներ, իսկ հետո նրան միացավ նաև Իսպանիան։



1960 թվականի մարտին նա ստեղծեց, այսպես կոչված՝ «Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիան» յոթ երկրների՝ Անգլիայի, Պորտուգալիայի, Նորվեգիայի, Շվեդիայի, Դանիայի, Ավստրիայի և Շվեյցարիայի մասնակցությամբ։

Այսպիսով, փաստորեն, կապիտալիստական Եվրոպան պառակտվեց երկու միմյանց հակադիր և մրցակցող տնտեսական խմբավորումների։ Արևմտյան Եվրոպայում սկսվեց իսկական առևտրական պատերազմ։ Սակայն այդ «պատերազմում» «ազատ առևտրի գոտին» խիստ անկենսունակ դուրս եկավ։

Շուտով Անգլիայի կառավարական շրջանները ստիպված էին ընդունել իրենց թուլությունը և ուղիներ որոնել «ընդհանուր շուկային» միանալու համար։

Մակմիլանի կառավարության շրջադարձը զգալի չափով հետևանք էր ամերիկյան իմպերիալիզմի գործադրած ճնշման։ Բանն այն է, որ Եվրոպայի տնտեսական պատերազմը հակասում էր ամերիկյան և եվրոպական իմպերիալիզմի ստրատեգիական նպատակներին, որովհետև սպառնալիքի տակ էր դնում Հյուսիս-ատլանտյան համագործակցության միասնությունը։

1961 թվականի օգոստոսի 3-ին Անգլիայի համայնքների պալատը հաստատեց Մակմիլանի կառավարության որոշումը՝ «ընդհանուր շուկային» միանալու մասին։ Անգլիայի օրինակին հետևեցին Դանիան, Իռլանդիան և Նորվեգիան։ Այժմ «ընդհանուր շուկային» միանալու համար դիմել են «յոթյակի» բոլոր երկրները, բացի Պորտուգալիայից։ Այսպիսով, փաստորեն «Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիան» քայքայվեց։ Իսկ երբ 1961 թվականի հոկտեմբերին Փարիզում սկսվեցին Մակմիլանի կառավարության և «ընդհանուր շուկայի» բանակցությունները, շատերին թվաց, թե Անգլիան անցավ Ռուբիկոնը։ Սակայն դրանք մինչև այսօր շոշափելի արդյունք չեն տվել։ Ո՞րն է գլխավոր դժվարությունը։ Հայտնի է, որ Անգլիայի արտաքին առևտրի 50 տոկոսը բաժին է ընկնում Ազգերի բրիտանական համագործակցության երկրներին, մինչդեռ ԵՏՀ երկրների բաժինը կազմում է դրա 13—14 տոկոսը։ Հռոմի պայմանագրի հոդվածները խիստ նեղացնում են «ընդհանուր շուկայի» վանդակի մուտքը բրիտանական առյուծի համար։ Անգլիային բացեիբաց հայտարարում են, որ ներս խցկվելու համար նրան անհրաժեշտ է նիհարելու նախնական պրոցեդուրա կատարել։ Իսկ դա նշանակում է հրաժարվել Ազգերի բրիտանական համագործակցությունից։

Բանն այն է, որ Հռոմի պայմանագրի համաձայն Անգլիան պետք է վերացնի իր բոլոր մաքսային պատնեշները «վեցյակի» առջև և համատեղ մաքսային քաղաքականություն կիրառի «ընդհանուր շուկայից» դուրս գտնվող երկրների, այդ թվում և Բրիտանական համագործակցության երկրների նկատմամբ։ Դա նշանակում է, որ համագործակցության երկրների ապրանքները (գլխավորապես գյուղատնտեսական հումքը և սննդամթերքը) կզրկվեն առանց մաքսի Անգլիա մուտք գործելու հնարավորությունից։ Անգլիական շուկան կհեղեղեն ֆրանսիական, իտալական և հոլանդական գյուղատնտեսական մթերքները, որոնց հետ համագործակցության երկրների ապրանքները անկարող կլինեն մրցել։

Ինչպես ցույց տվեց Ազգերի բրիտանական համագործակցության երկրնե-

րի պրեմիեր-մինիստրների սեպտեմբերյան կոնֆերանսը Լոնդոնում, «ընդհանուր շուկային» միանալու անգլիական պլանը հավանություն չի գտնում համագործակցության երկրներում: Նույնիսկ լեյբորիստական պարտիայի ղեկավար Գեյտսկելը, որի դիրքը երկար ժամանակ անորոշ էր, այդ կոնֆերանսի օրերին, Բրիտանական համագործակցության երկրների աջ սոցիալիստական պարտիաների ներկայացուցիչների հետ խորհրդակցելուց հետո հայտարարեց, որ Անգլիան մինչև այժմ նրան առաջադրված պայմաններով չպետք է միանա «վեցյակին»:

Չնայած այս ամենին, Միացյալ Նահանգները Անգլիային համառորեն հրում են դեպի «ընդհանուր շուկա»: Ամերիկյան իմպերիալիզմի մտադրությունը դժվար չէ կռահել: Բանն այն է, որ Բրիտանական համագործակցության անկումը խիստ կհեշտացնի ամերիկյան կապիտալի ներթափանցումը ստեռլինգային զոնայից ներս և անգլիական ազդեցության նախկին ոլորտները փաստորեն կդնի Միացյալ Նահանգների վերահսկողության տակ: Բնորոշ է, որ 1961 և 1962 թվականների ապրիլին Վաշինգտոնում տեղի ունեցած անգլո-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումներում պրեզիդենտ Քենեդին պնդեց, որ Անգլիան արագացնի «ընդհանուր շուկային» միանալու իր որոշումը:

Անգլիան ձգտում է «ընդհանուր շուկայի» մեջ մտնել Բրիտանական համագործակցության երկրների հետ իր առևտրա-տնտեսական կապերի ներկա վիճակը և կայսերական պրեֆերենցիաները պահպանելու պայմանով: Ահա թե ինչով պետք է բացատրել Անգլիայի վարանումները «ընդհանուր շուկայի» վանդակի մուտքի առջև:

Վարանումները յուրահատուկ են ոչ միայն Անգլիային: ԵՏՀ խտրական քաղաքականությունը երրորդ երկրների հետ կատարվող առևտրում ուժեղացրել է նրանցից մի քանիսի «ընդհանուր շուկայի» մեջ մտնելու և կամ նրա հետ հատուկ առևտրական համաձայնագրեր ստորագրելու ձգտումը: Բայց այդ երկրները չեն կարող հաշվի չառնել այն հանգամանքը, որ իմպերիալիզմն աշխատում է «ընդհանուր շուկան» օգտագործել որպես խայծ՝ ՆԱՏՕ-ն համալրելու նպատակով: Իսկ դա տրամագծորեն հակասում է Եվրոպայի չեզոք երկրների՝ Շվեդիայի, Ավստրիայի և Շվեյցարիայի արտաքին քաղաքական կուրսին:

## ԱՄՆ-Ը ԵՎ «ԵՎՐՈՊԱԿԱՆ ՇՈՒԿԱՆ»

Քաջ գիտակցելով, որ տնտեսական հակամարտությունները ընդունակ են քայքայել ամեն տեսակ ռազմա-քաղաքական կոալիցիաները, ամերիկյան իմպերիալիզմը տնտեսական «ինտեգրացիայի» մեջ տեսնում է կապիտալիստական աշխարհի ռազմա-քաղաքական միասնությունը կոփելու բանալին: Ահա թե ինչու, երբ 50-ական թվականների կեսերին երևան եկավ Եվրոպական տնտեսական համագործակցություն ստեղծելու պլանը, ԱՄՆ-ը շտապեց պաշտպանել այն: Այդ է վկայում Պետական դեպարտամենտի 1957 թվականի հունվարի 15-ի հատուկ հայտարարությունը: Պաշտպանելով ԵՏՀ-ն ԱՄՆ-ը պլանավորում էր ՆԱՏՕ-ի համար ստեղծել տնտեսական բազա, ֆիլիալ, այդ գլխավոր ռազմա-քաղաքական ագրեսիվ բլոկը ամեն տեսակետից կատարյալ և անխոցելի դարձնելու համար:



ԱՄՆ-ին անհրաժեշտ էր նախ՝ «ինտեգրացված» Եվրոպան պահել ամերիկյան գերիշխանության ներքո և ապա՝ թույլ չտալ, որ «ընդհանուր շուկան» տնտեսապես պառակտի Եվրոպան: Ահա թե ինչու ԱՄՆ-ը դժկամությամբ ընդունեց «ազատ առևտրի եվրոպական ասոցիացիայի» հայտնվելը: Բայց վերջինիս փաստական անկումը դեռևս չի նշանակում, թե ԱՄՆ-ին հաջողվել է կանխել Արևմտյան Եվրոպայի տնտեսական պառակտումը և դրա քաղաքական հետևանքները: Ընդհակառակը, «ինտեգրացիայի» սերմերը չտվեցին սպասված պտուղները: Ի տարբերություն ամերիկյան իմպերիալիզմի պլանների, նրա արդյունքը եղավ ո՛չ թե կապիտալիստական աշխարհի հետագա համախմբումը և միասնության ամրապնդումը, այլ պառակտման և հակադիր ու մրցակցող կոալիցիաների գոյացման միանգամայն ռեալ վտանգը: Այժմ նույնիսկ ամերիկյան կառավարող շրջաններում տագնապով ստիպված են խոստովանել, որ իրադարձությունների էվոլյուցիան ԱՄՆ-ի համար ստեղծել է մի շարք լուրջ պրոբլեմներ, ինչպես, օրինակ, Արևմտյան Եվրոպայի պառակտման և ի դեմս «ընդհանուր շուկայի» հզոր մրցակից ունենալու վտանգը, որը սպառնում է ամերիկյան գերիշխանությանը կապիտալիստական աշխարհում և այլն: Միացյալ Նահանգները չէին կարող անտարբեր մնալ Արևմտյան Եվրոպայում տեղի ունեցող տեղաշարժերի նկատմամբ նաև այն պատճառով, որ այնտեղ ունեն զգալի տնտեսական շահեր: ԱՄՆ-ի արտաքին առևտրի շրջանառության մեկ երրորդը կազմում է Արևմտյան Եվրոպայի բաժինը: Արևմտաեվրոպական երկրներում ամերիկյան մոնոպոլիաներն ունեն խոշոր կապիտալ ներդրումներ: Հատկապես ուժեղ է ամերիկյան կապիտալի հոսքը դեպի Արևմտյան Գերմանիա: Այնուամենայնիվ ԱՄՆ-ի դիրքերն այժմ Արևմտյան Եվրոպայում զգալի չափով ավելի թույլ են, քան հետպատերազմյան առաջին տարիներին: Եվրոպական «ինտեգրացիան» դուրս է եկել ԱՄՆ-ի հսկողության տակից: Ամերիկյան տնտեսագետների հաշվումների համաձայն ԵՏՀ-ի արտաքին մաքսային նոր տարիֆները կշոշափեն ԱՄՆ-ից ներմուծվող ապրանքների 32 տոկոսը:

Միացյալ Նահանգների կառավարությունը տենդագին գործունեություն է ծավալել «ինտեգրացիայի» պրոցեսը դեպի «նախատեսված» հունը վերադարձնելու և այն ամերիկյան իմպերիալիզմի տնտեսական ու ռազմա-քաղաքական նպատակներին ծառայեցնելու համար՝ ապարդյուն կերպով փորձելով հաղթահարել իմպերիալիզմի բուն էությունից բխող հակասությունները: Արևմտյան Եվրոպայի իմպերիալիստական «ինտեգրացիայի» վերաբերյալ Համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտի Թեզիսներում ասված է. «Միացյալ Նահանգները արևմտաեվրոպական «ինտեգրացիան» ընկալում են միաժամանակ և՛ որպես քաղաքական անհրաժեշտություն, և՛ որպես սպառնալիք իրենց համար»: Եվրոպական «ինտեգրացիայի» սպառնալից հետևանքները ԱՄՆ-ի համար կանխելու նպատակով ամերիկյան մոնոպոլիաները և կառավարող շրջանները դիմում են զանազան միջոցների:

Ամենից առաջ, իրենց կապիտալներով ներս սողոսկելով «ընդհանուր շուկայի» պարսպից ներս, ամերիկյան մոնոպոլիաները աշխատում են օգտվել նրա ընձեռած «բարիքներից»: 1958 թվականից մինչև 1961 թվականի կեսերը «վեցյակի» երկրներում արձանագրվել է ամերիկյան նոր և հավելյալ կապիտալ ներդրումների 717 օպերացիա: Միաժամանակ, ինչպես նշվում է նույն

թեզիսներում, Միացյալ Նահանգները փորձում են տնտեսական սպառնալիքը վերացնել «ընդհանուր շուկայի» հետ մերձենալու, այն ավելի լայն, «ատլանտյան» պետական-մոնոպոլիստական համաձայնությունների մեջ տարրալուծելու ճանապարհով:

ԱՄՆ-ի պրեզիդենտ Քեննեդին հունվարի 25-ին կոնգրեսին հղած ուղերձում առաջարկում էր «ընդհանուր շուկայի» հետ մշակել այնպիսի հարաբերություններ, որոնք ԱՄՆ-ի առջևից լիովին վերցնեին մաքսային պատնեշները: 1962 թվականի հունվարի 16-ին Բրյուսելում համաձայնագիր ստորագրվեց, ըստ որի «ընդհանուր շուկայի» երկրները 20 տոկոսով իջեցնում են ԱՄՆ-ից ներմուծվող հիմնականում բոլոր ապրանքների համար վերցվող մաքսերը: ԱՄՆ-ը իր հերթին կրճատում է մաքսերը այդ երկրներից ներմուծվող արտադրանքի մի քանի տեսակների համար:

Ինչ վերաբերում է «ընդհանուր շուկան» ընդլայնելու պլաններին, ապա պետք է ասել, որ նույնիսկ այն մինչև ատլանտյան մասշտաբները ընդարձակելու ամերիկյան ձգտումն արդեն ի հայտ է բերում «ինտեգրացիայի» հակասական բնույթը: Եթե Մեծ Բրիտանիան և ատլանտյան համագործակցության այլ երկրները, օրինակ, Նորվեգիան և Դանիան միանան «ընդհանուր շուկային», ապա այն կդառնա ավելի ընդարձակ և ծավալուն, քան Միացյալ Նահանգները: Այդ կապակցությամբ Ուոլտեր Լիպմանը գրում էր. «Երբ Մեծ Բրիտանիան միանա, մենք կհայտնվենք ոչ միայն մրցակցության առջև, որը սարսափելի կլինի, այլև մեր վճարման բալանսում լուրջ դժվարությունների հավանականության առջև»:

Մյուս կողմից «ընդհանուր շուկան» իր ներկայիս նեղ շրջանակներում թողնելը կարող է հասցնել կապիտալիստական երկրների միջև անտագոնիզմի ուժեղացման և իմպերիալիստական նոր կոալիցիաների գոյացման: Ըստ էության դրա դեմ է ուղղված ամերիկյան կառավարական շրջանակներում ծնունդ առած, այսպես կոչված, «տրանսատլանտյան համագործակցության» գաղափարը, որն, ըստ հեղինակների կանխագծումների, պետք է ընդգրկի Հյուսիսային Ամերիկան, Արևմտյան Եվրոպան և, այսպես կոչված, «ազատ աշխարհի» մյուս երկրները: Այս ֆանտաստիկ պլանի նպատակն է ԵՏՀ-ն տարրալուծել լայնարձակ կազմակերպության մեջ, զրկել նրան իր ներփակ բնույթից բխող մրցակցային հնարավորություններից և ապահովել ԱՄՆ-ի գերիշխող դերը կապիտալիստական աշխարհում: Սակայն այս, ավելի շուտ «անդրատլանտյան» քան «տրանսատլանտյան», պլանը մնում է որպես անուրջ: Եթե նույնիսկ հնարավոր լիներ իրականացնել Արևմտյան Եվրոպայի «ինտեգրացիայի» ծրագիրը, ապա այն կուժեղացներ ներհակությունը իմպերիալիստական տերությունների միջև, որովհետև կապիտալիստական աշխարհը վերջնականապես կտրոհվեր երեք հակադիր տնտեսական խմբավորումների.

1) ԱՄՆ-ը, որը գերադասում է ԵՏՀ-ի հետ գտնվել առանձնակի փոխհարաբերությունների մեջ, պահպանելով իր գերիշխող դերը կապիտալիստական աշխարհում և մերժում է «ընդհանուր շուկային» միանալու գաղափարը: Այդ դիրքին հարում են նաև Կանադայի կառավարող շրջանները:

2) Միացյալ Եվրոպան կամ «տրեստների Եվրոպան»՝ Անգլիայի, ԳՖՌ-ի և Ֆրանսիայի գլխավորությամբ, և

3) Ճապոնիան, որը հավանաբար կձգտեր իր շուրջը համախմբել մի շարք ասիական կապիտալիստական երկրների՝ միջազգային շուկաներում ինչպես



«ինտեգրացված» Եվրոպայի, այնպես էլ Միացյալ Նահանգների հետ հաջողությամբ մրցակցելու համար: Սակայն «ինտեգրացիան» ինչպես լայնությամբ (նորանոր երկրներ ընդգրկելու տեսակետից), այնպես էլ խորությամբ (այն տնտեսական բնագավառից քաղաքական և ռազմական բնագավառների վրա տարածելու իմաստով) առաջ տանելու փորձերը անընդհատ ծնում են նոր խոչընդոտներ ու հակասություններ: Դրա ցայտուն ապացույցներից մեկը Արևմտյան Եվրոպայի ռազմա-քաղաքական «ինտեգրացիայի» հարցն է, որը հասցրել է լուրջ երկպառակությունների ՆԱՏՕ-ի ներսում:

## ԴԸ ԳՈԼԸ ՀԱՎԱՆՈՒՄ Է...

Իր մայիսյան համարներից մեկում «Վաշինգտոն պոստ ընդ թայմս հերալդ» թերթը գրում էր, որ արևմտյան տերությունների վեճերն ու տարաձայնությունները ատլանտյան դաշինքում ամենալուրջ փակուղին են առաջացրել նրա գոյության 13 տարիների ընթացքում:

Հակասությունների նոր, ուժգին պոռթկման պատճառը հանդիսացավ պրեզիդենտ դը Գոլի մայիսի 15-ի հայտնի պրես-կոնֆերանսը, որտեղ գեներալ պրեզիդենտը բացեիբաց շարադրեց իր ուրույն տեսակետը Եվրոպայի ռազմաքաղաքական «ինտեգրացիայի» վերաբերյալ:

Դը Գոլը պահանջում է Արևմտյան Եվրոպայի քաղաքական «ինտեգրացիայի» հիմքում դնել ո՛չ թե ֆեդերացիայի, այլ կոնֆեդերացիայի սկզբունքը: «Ընդհանուր շուկայի» մյուս երկրներում և ԱՄՆ-ում պաշտպանում են «հայրենիքների Եվրոպա» ստեղծելու պլանի զանազան տարբերակները, մինչդեռ Ֆրանսիան հանդես է գալիս «պետությունների Եվրոպայի»[1] պլանով, որը հայտնի է «Ֆուշեի պլան» անունով: Դը Գոլը «հայրենիքների Եվրոպայի» գաղափարը՝ իր «համաեվրոպական պառլամենտով և կառավարությամբ» համարում է ֆիկցիա:

Ի տարբերություն ամերիկացիների, նա Եվրոպան դիտում է որպես Ամերիկայից անջատ, ինքնուրույն տնտեսական և քաղաքական ամբողջություն, որը կոչված է «երրորդ ուժի» դեր խաղալու և որը ոչ միայն ուղղված է լինելու սոցիալիստական աշխարհի դեմ, այլև ընդդիմանալու է անգլո-սաքսոնական քաղաքականությանը:

Ֆրանսիայի պրեզիդենտը դեմ է ՆԱՏՕ-ի զինված ուժերի միաձուլման սկզբունքին և գտնում է, որ ազգային զինված ուժերը պետք է գտնվեն ազգային հրամանատարությունների ներքո և օգտագործվեն ազգային կառավարությունների հայեցողությամբ: «Մեզ համար,— հայտարարեց դը Գոլը մա-

---

1 Ըստ այդ պլանի՝ ֆրանսիացին, գերմանացին, իտալացին, բելգիացին և ուրիշներ պետք է ունենան հայրենիք, բայց ոչ պետություն: Նրանց պետությունը պետք է լինի միաձույլ Եվրոպան, խսկ հայրենիքները՝ Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան, Իտալիան, Բելգիան և այլն: «Հայրենիքների Եվրոպան» նշանակում է ազգային սուվերենության լիակատար ոչնչացում: «Պետությունների Եվրոպայի» կողմնակիցների կարծիքով արևմտաեվրոպական «ինտեգրացիան» պետք է ստեղծի պետությունների կոնֆեդերացիա, որտեղ անդամ-երկրները պետք է պահպանեն ազգային ինքնուրույնությունը, ունենան պետական իշխանության ինքնուրույն օրգաններ և միայն արտաքին քաղաքականության և ռազմական քաղաքականության համընդհանուր նշանակություն ունեցող հարցերում վարեն համաձայնեցված գիծ:

յիսի 15-ի պրես-կոնֆերանսում,— բարոյական և քաղաքական տեսակետից անհրաժեշտ է անել այնպես, որ բանակը ազգի հետ կազմի մի ամբողջություն»։

Դը Գոլը գտնում է, որ փոխվել են այն պայմանները, որոնցում 13 տարի առաջ ծնունդ առավ Հյուսիս-ատլանտյան դաշինքը և հետևապես անհրաժեշտ է փոխել նաև ստրատեգիական կոնցեպցիաները։ ԱՄՆ-ը կորցրել է մենաշնորհը միջուկային զենքի տիրապետության ասպարեզում և այլևս իմաստ չունի Արևմտյան Եվրոպայի «պաշտպանության հոգսը» ամբողջությամբ հանձնել ԱՄՆ-ին։ Այժմ, նրա կարծիքով, ՍՍՌՄ-ը և ԱՄՆ-ը իրենց տրամադրության տակ եղած միջոցներով ընդունակ են «փոխադարձաբար ոչնչացնել» միմյանց և «ամեն ինչ դրված է հարցականի տակ»։ Այդ պատճառով դը Գոլը պահանջում է, որ Ֆրանսիայի պաշտպանությունը «նորից ազգային պաշտպանություն դառնա»։ Նա ազգային ինքնուրույն, անկախ միջուկային ուժեր ստեղծելու գաղափարի ամենամոլի պրոպագանդիստն է։ Այսպիսով, ռազմաքաղաքական «ինտեգրացիայի» հարցում դը Գոլը ամուր կանգնած է արևմտաեվրոպական երկրների ազգային-պետական սուվերենությունը պահպանելու կողմը։ Միացյալ Նահանգներում դը Գոլի հավակնությունները թվում են ցնորք։ Հայտնի հրապարակախոս Ջեյմս Ուորբուրգը դրանք անվանում է «ռոմանտիկական նացիոնալիզմ»։ Սակայն անժխտելի է, որ այդ հավակնություններն ունեն ռեալ հիմք։ Տնտեսական և ֆինանսական տեսակետից Արևմտյան Եվրոպան զգալի չափով անկախ է դարձել ԱՄՆ-ից, իսկ «ընդհանուր շուկայի» ներսում արտադրության աճի համեմատաբար ավելի բարձր տեմպերը նրան փաստորեն դուրս են բերել ԱՄՆ-ի համար վտանգավոր մրցակից դառնալու ուղին։ Արևմտյան Եվրոպան իր համար հավասար տեղ է պահանջում կապիտալիստական արևի տակ՝ ԱՄՆ-ի կողքին։ Իսկ դա Ատլանտյան օվկիանոսի մյուս ափին առաջացնում է ո՛չ միայն անհանգստություն, այլև անսքող զայրույթ։ Այժմ ատլանտյան համերաշխության ցույցերը հաճախ հիշեցնում են սիրային անհաջող մելոդրամներ, որոնք, այնուամենայնիվ, չեն լինում առանց դրամատիկ պոռթկումների։

Այդպես եղավ Դին Ռասկի շրջագայությունը Արևմտյան Եվրոպայում հունիսի վերջին։ Տասը օր նա եղավ Փարիզում, Արևմտյան Բեռլինում, Բոննում, Հռոմում, Լոնդոնում և Լիսաբոնում։ Ռասկը Փարիզում մնաց 48 ժամ, առանց շոշափելի արդյունքի։ Նրան հուսախաբություն էր սպասում նաև Լոնդոնում։ Հունիսի 26-ին Մակմիլանը համայնքների պալատում պատասխանելով լեյբորիստական օպոզիցիայի հարցերին, աներկբայորեն ընդգծեց, որ Անգլիան ունի ինքնուրույն միջուկային ուժեր և կոնստիտուցիոն իրավունք՝ ինքնուրույն կերպով վճռելու պատերազմի դեպքում դրանք կիրառելու հարցը։ Դա նշանակում էր, որ Մակմիլանը պաշտպանության տակ էր առնում ինքնուրույն, անկախ ազգային միջուկային ուժեր ունենալու դըգոլյան տեսակետը։

Եվրոպա մեկնելիս Դին Ռասկը հայտարարեց, որ ատլանտյան համագործակցության ներսում «ճեղքվածքներ չկան» և նրա մասնակիցների նպատակն է «մեծ շինության» վրա մի նոր հարկ ավելացնել։ «Նոր հարկ» ասելով Դին Ռասկը նկատի ուներ Եվրոպայի «ինտեգրացիան»։ Սակայն նրան չհաջողվեց ոչ մի աղյուս իսկ ավելացնել ատլանտյան «շինության» վրա և նա Վաշինգտոն վերադարձավ ձեռնունայն։



## ԹԱԿԱՐԴ՝ ԹՈՒՅԼԵՐԻ ՀԱՄԱՐ

Հռոմի պայմանագիրը «ընդհանուր շուկայի» գիրկն է հրավիրում անկախություն ձեռք բերած երկրներին՝ «ասոցիացիայի ենթարկված» անդամների իրավունքով։ Ֆրանսիայի, Անգլիայի և Իտալիայի նախկին գաղութներն Աֆրիկայում այժմ կանգնած են այդ դայթակղության վտանգի առջև։

«Ասոցիացիայի ենթարկված» երկրները «ընդհանուր շուկայի» լիիրավ անդամներ չեն համարվում։ Նրանց իրավունք է տրվում արտոնյալ մաքսերով «ընդհանուր շուկա» արտահանել գյուղատնտեսական ապրանքներ և նրանցից պահանջվում է՝ «ընդհանուր շուկայի» երկրներից, վերջիններիս համար արտոնյալ մաքսերով, ներմուծել պատրաստի արտադրանք[1]։ Իսկ դա նշանակում է պահպանել աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման ներկա այլանդակ պատկերը, երբ թույլ զարգացած երկրները ագրարային-հումքային կցորդի դեր են խաղում բարձր զարգացած կապիտալիստական երկրների համար։

Թույլ զարգացած երկրները ստիպված են լինելու դեպի բարձր զարգացած կապիտալիստական երկրներն արտահանել գլխավորապես արևադարձային ծագում ունեցող մթերքներ, որոնց կարիքն զգացվում է Եվրոպայում, իսկ դա էլ ավելի կընդգծի նրանց տնտեսության միակողմանի, հաճախ մոնոկուլտուրային բնույթը։ Ինչ վերաբերում է նույնատիպ գյուղատնտեսական ապրանքներին, որոնք արտադրվում են նաև «ընդհանուր շուկայի» երկրներում, ապա այս դեպքում թույլ զարգացած երկրները չեն դիմանա մրցակցությանը, որովհետև գյուղատնտեսական հումքի և սննդամթերքի ինքնարժեքը նրանց մոտ շատ ավելի բարձր է, քան Արևմտյան Եվրոպայում։

Թույլ զարգացած երկրները ստիպված են Հռոմի պայմանագրի համաձայն ցածր, արտոնյալ մաքսային տարիֆներ սահմանել բարձր զարգացած երկրներից ներմուծվող արդյունաբերական ապրանքների համար։ Դրանով նրանք մի կողմից իրենց երիտասարդ, դեռևս թույլ արդյունաբերությունը կզրկեն մաքսային պաշտպանությունից և ներքին շուկան լայնորեն օգտագործելու հնարավորությունից, իսկ մյուս կողմից կկրճատեն սեփական տնտեսությունը զարգացնելու համար անհրաժեշտ կուտակումներ ստեղծելու միջոցները։

Այսպիսով, թույլ զարգացած երկրների առևտուրն ամբողջությամբ կընկնի օտարերկրյա մոնոպոլիաների վերահսկողության տակ։

«Ինտեգրացիայի» շնորհիվ իմպերիալիստական բուրժուազիան կսկսի ավելացնել կապիտալ ներդրումները թույլ զարգացած երկրներում՝ մասնավոր ներդրումների ձևով, որը կարգելակի այդ երկրներում տնտեսության պետական սեկտորի զարգացումը։

Թույլ զարգացած երկրների «ինտեգրացիան» հետապնդում է նաև քաղաքական նպատակներ։ Իմպերիալիզմը ձգտում է սեպ խրել զարգացման անկախ ուղին թևակոխած երկրների միջև, խորտակել ասիական և աֆրիկյան ժողովուրդների միասնությունը։ Այսպիսով, «ինտեգրացիան» իր մի ծայրով ուղղված է քաղաքական անկախության հասած երկրների դեմ, որպես կոլեկտիվ գաղութակալության կամ նեոգաղութակալության միջոց։

[1] Արևմտյան Աֆրիկայի մի շարք երկրներ, որոնք միացել են «ընդհանուր շուկային», արդեն մինչև 1962 թ. սկիզբը «ընդհանուր շուկայի» երկրներից ներմուծվող ապրանքների մաքսային տարիֆները կրճատել են 30 տոկոսով։

***

1915 թվականին Վ. Ի. Լենինը «Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին» հոդվածում գրում էր. «Իհարկե կապիտալիստների միջև և տերությունների միջև ժամանակավոր համաձայնություններ հնարավոր են։ Այս իմաստով հնարավոր են և Եվրոպայի Միացյալ Նահանգները, որպես եվրոպական կապիտալիստների համաձայնություն... Ինչի՞ մասին։ Միայն այն մասին, թե ինչպես միասին սոցիալիզմը ճնշեն Եվրոպայում, միասին պահպանեն կողոպտված գաղութները...» (Երկեր, հատ. 21, էջ 434)։

Բայց «ինտեգրացիայի» շնորհիվ Եվրոպայի ռեակցիոն Միացյալ Նահանգներ ստեղծելու պլանը երբեք այնպես դրված չի եղել պրակտիկ հողի վրա, ինչպես այժմ։ Թերևս միայն պրակտիկ կիրառման մեջ մանելով, «ինտեգրացիայի» պլանը լիովին ցույց տվեց, թե այն ինչ հակասություններ և պարադոքսներ կարող է ծնել կապիտալիստական հասարակարգի պայմաններում։ Հակասություններ «ընդհանուր շուկայի» երկրների միջև և ամեն մի երկրի ներսում, «ընդհանուր շուկայի» և կապիտալիստական Եվրոպայի մյուս երկրների, այդ թվում Անգլիայի միջև, «ընդհանուր շուկայի» և ԱՄՆ-ի միջև, «ընդհանուր շուկայի» և թույլ զարգացած երկրների միջև։ Մի՞թե այս բոլորը բավական չէ ցրելու համար կապիտալիստական «ինտեգրացիայի» ջատագովների լավատեսությունը։

Իսկ Ճապոնիա՞ն։ Չէ որ այս երկիրը դուրս է մնացել «ինտեգրացիայի» հեղինակների հաշիվներից։ Ճապոնիան, որն իր արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերով առաջ է կանգնած «ընդհանուր շուկայի» երկրներից, կրնկակոխ հետապնդում է կապիտալիստական ամենահզոր երկրներին համաշխարհային արտադրության և առևտրի վազքուղիներում։ Մի՞թե Ճապոնիան մի նոր պրոբլեմ չէ «ինտեգրացիայի» նախաձեռնողների համար։ Ժխտել այդ, կնշանակեր Բուրբոնների նման պատմությունից ոչինչ չսովորել և ոչինչ չմոռանալ։

———

# ՂԵԿԱՎԱՐ ԱՇԽԱՏՈՂԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կողմից Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքի բացահայտ ու համարձակ դատապարտումը և անցյալի խեղաթյուրումների ու սխալների, լենինիզմի ոգուն խորթ մեթոդների հաղթահարումը օգնեցին պարտիային ու պետությանը՝ հասարակական գործունեության բոլոր օղակներում վճռականորեն վերականգնելու և զարգացնելու կոլեկտիվ ղեկավարության սկզբունքները։

Անհատի պաշտամունքը կաշկանդում էր ժողովրդական մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, նրանց միտքն ու եռանդը։ Չէ՞ որ որքան էլ մեծ ու հանճարեղ լինի անհատը, նա չի կարող փոխարինել մասսաների գործունեությանն ու իմաստնությանը, կոլեկտիվ փորձին։ Կոլեկտիվ միտքը ստեղծում է ինչ-որ ավելի մեծ բան, քան անհատը։

Անցյալում, անհատի պաշտամունքի իրագրության մեջ ծնունդ էին առել ու տարածում գտել այնպիսի արատավոր երևույթներ, ինչպիսիք են վարչարարությունը, կամայականությունը, թերությունների կոծկումը և իրականության գունազարդումը, սեփական ուժերի նկատմամբ մարդկանց անվստահությունը, վախը նորի հանդեպ։

Մարքսիզմ-լենինիզմը դեմ լինելով անհատի աստվածացմանը, երբեք էլ չի ժխտում բանվոր դասակարգի լիդերների և առաջնորդների կարևոր դերը։ Կոմունիստական պարտիան ընդունում է և ըստ արժանվույն գնահատում ղեկավարների հեղինակությունը, այնպիսի ղեկավարների, որոնք ճիշտ ու ժամանակին ընկալում են հասարակական զարգացման պահանջները և ազնվորեն ծառայում են ժողովրդին։ Հեղինակությունները մեր պարտիայի ու հասարակության համար ոչ միայն օտար չեն, այլև անհրաժեշտ են, որպեսզի ավելի հաջողությամբ կազմակերպվեն և իրագործվեն տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները, ավելի արագ ընթանա մեր զարգացումը դեպի կոմունիզմ։

Մեր պարտիան հասուն և գաղափարապես կոփված մեծաթիվ ղեկավար կադրեր է դաստիարակել աշխատանքի բոլոր բնագավառների համար, հմուտ ու եռանդուն կազմակերպիչներ, որոնք իրենց բարձրագույն պարտքն են համարում ժողովրդին անձնվիրաբար ծառայելը։

Ի՞նչ է հեղինակությունը։ Դա այս կամ այն մարդու գործի, ընդունակությունների, փորձի ու գիտելիքների ընդհանուր ճանաչումն է։

Հեղինակավոր է նա, ում միտքն ու գործը ավելի կամ պակաս չափով ներգործում են մնացած մարդկանց կենսահայեցողության, վարքագծի, գոր-

ծելակերպի վրա։ Հեղինակությունը հսկայական բարոյական ազդակ է, որը խթանում է հասարակական պրոգրեսը։ Լենինն ասում էր. «Պետական հիմնարկի ղեկավարը պետք է վերին աստիճանի ընդունակ լինի իր կողմը գրավելու մարդկանց և ունենա գիտական ու տեխնիկական բավականաչափ սոլիդ գիտելիքներ նրանց աշխատանքը ստուգելու համար։ Սա՝ որպես հիմնականը։ Աշխատանքն առանց դրա չի կարող ճիշտ լինել։ Մյուս կողմից, շատ կարևոր է, որ նա կարողանա կառավարել և այդ գործում ունենա արժանավոր օգնական կամ օգնականներ։ Այդ երկու հատկությունների միացումը մի անձի մեջ հազիվ թե պատահի և հազիվ թե անհրաժեշտ լինի» (Երկեր, հ. 36, էջ 695)։

Այսպիսով, սովետական ղեկավար գործիչը, ըստ Լենինի, պետք է օժտված լինի ոչ միայն մարդկանց իր կողմը գրավելու, նրանց համակրանքը վայելելու հատկությամբ, այլև պետք է ունենա սոլիդ գիտելիքներ մարդկանց գործունեության ընթացք տալու և այն ստուգելու համար։ Սա է լենինյան տիպի ղեկավարի հեղինակության հիմնական չափանիշը։ Սակայն նրա մեկ այլ հատկանիշը՝ կառավարելու կարողությունն է։ Բացի այդ, Լենինը ղեկավար գործչի բնորոշ գիծն էր համարում օգնականներ ընտրելու, մարդկանց աշխատանքում ըստ արժանվույն դասավորելու իմացությունը։

Հեղինակությունները հանպատրաստի, միանգամից հանդես չեն գալիս, երկնքից չեն ընկնում։ Նրանք ծնունդ են առնում ժողովրդի ընդերքից, աճում ու իրենց դրսևորում են աշխատանքում և, ժամանակի ընթացքում, շնորհիվ իրենց գործունեության, դառնում են հանրաճանաչ։ Մարդը կարող է ոչ մի պաշտոն չունենալ, սակայն շնորհիվ իր գիտելիքների և աշխատանքային փորձի ունենալ լավ համբավ և հեղինակություն։

Մի քանի տարի առաջ շատ քչերին էր հայտնի շարքային մանածագործուհի Վալենտինա Գագանովան, սակայն այժմ մեր երկրում չկա մի անկյուն, որտեղ հայտնի չլինի նրա անունը, որտեղ նա չօգտվի իսկական ժողովրդական հեղինակությամբ։ Ո՞րն է դրա պատճառը։ Այն, որ հայրենասեր բանվորուհին կատարեց խիզախ քայլ՝ կանգ չառնելով նյութական զոհաբերության առաջ, աշխատանքի առաջավոր տեղամասից տեղափոխվեց ետ մնացող տեղամասը՝ այն առաջավորների շարքը բարձրացնելու ազնիվ միտումով։ Դրանով նա համաժողովրդական մի հիանալի շարժման սկիզբ դրեց։ Այսպես ծնունդ են առնում ու բարձրանում հարյուրավոր ու հազարավոր շարքային մարդիկ, որոնք իրենց հայրենանվեր գործունեությամբ հետագայում դառնում են պետական, պարտիական ու հասարակական հանրաճանաչ գործիչներ, արտադրության հմուտ կազմակերպիչներ, նորարարներ։

Ընդհանուր գործի շահերի տեսակետից մեզ համար առանձնապես կարևոր է ղեկավար աշխատողի հեղինակությունը, նրա գործունեության գնահատումն ու ճանաչումը մասսաների կողմից։

Ղեկավարի իսկական հեղինակությունը պայմանավորված է նախ իր, անձնական հատկություններով, նրա աշխատանքի ոճով ու մեթոդով, այն բանով, թե նա ինչպես է մարդկանց ջանքերն ուղղում հիմնական նպատակին։ Այն ղեկավարը կարող է հեղինակություն վաստակել, ով ճիշտ է հասկանում և արտահայտում պարտիայի ու ժողովրդի շահերը, ով նվիրված է կոմունիզմի գործին, ով ուժ ու եռանդ չի խնայում՝ այն կյանքում մարմնավորելու համար։ Բոլորովին նշանակություն չունի, թե մարդը ինչպիսի պոստ է գրավում՝ բարձր թե ցածր, մեծ թե փոքր։ Միանգամայն հնարավոր է, որ այս կամ այն ղեկա-



վարը զբաղեցնում է բավականաչափ պատասխանատու, բարձր պոստ, սակայն օժտված չլինելով ղեկավարի համար անհրաժեշտ դրական հատկանիշներով, չի օգտվում հեղինակությամբ և ճանաչում չի գտնում կոլեկտիվի, աշխատավորական մասսաների կողմից։

Անժխտելի հեղինակությամբ կարող է օգտվել այն ղեկավարը, ով աշխատանքում հանդես է բերում նախաձեռնություն ու կրքոտություն, գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցում, ով միշտ ընթանում է իր ղեկավարած կոլեկտիվի առջևից, ով նորի, պրոգրեսի ջատագով է։ Միաժամանակ անհրաժեշտ է, որ ղեկավար աշխատողն այդ լավագույն գծերը պատվաստի նաև իր շրջապատի մարդկանց։

Սակայն ղեկավարը չպետք է այնպես պատկերացնի, թե միայն ինքն է օժտված լավագույն հատկանիշներով և կոչված է սոսկ դաստիարակողի դեր կատարել, որ ինքը ուրիշներից սովորելու կարիք չունի։ Նման դատողությունը մեծագույն մոլորություն է։ Ժողովրդական մասսաների մեջ դրսևորվում են մարդկային ամենալավագույն հատկանիշները։ Իսկական ղեկավարը նա է, որ դաստիարակելով ու սովորեցնելով մասսաներին, փոխադարձաբար ինքն է սովորում նրանցից, կոփվում ու հղկվում է կոլեկտիվում։ Չէ՞ որ հենց մասսաների հետ ունեցած մշտական, սերտ կապի ու շփման մեջ ավելի պարզորոշ, ավելի ցցուն են երևում այս կամ այն ղեկավարի ինչպես դրական, այնպես էլ բացասական գծերը։

Ղեկավարը, որքան էլ խելացի ու տաղանդավոր լինի, միայնակ, առանց կոլեկտիվի, առանց պարտիական ու հասարակական մյուս կազմակերպությունների օգնության ու աջակցության, ի վիճակի չէ էական ներգործություն ունենալ դեպքերի ընթացքի վրա։ Հեղինակություն չի կարող ունենալ այն ղեկավարը, որն իր պաշտոնից հեռու ոչինչ չի տեսնում, ով իր պաշտոնը դիտում է որպես սոսկ իր բարեկեցությունը բարձրացնելու միջոց, ով պաշտոնի է հասել ոչ թե իր անձնական ծառայությունների ու գործնական հատկանիշների շնորհիվ, այլ պատահականորեն՝ «բախտի» բերումով։ Հեղինակություն չի կարող ունենալ այն մարդը, ով կանգնում է պարտիայի ու պետության խաբելու, չարաշահումների ու զեղծարարության ուղու վրա։

Ղեկավար աշխատողի գործունեությունը գնահատվում է ըստ տվյալ գործարանի, ու կառույցի, կոլտնտեսության ու սովխոզի, գիտական և ուսումնական հիմնարկի գործունեության կոնկրետ արդյունքների։ Իսկ այդ արդյունքների ձեռքբերման գործում մեծ դեր է խաղում մասսաների հետ ղեկավարների ունեցած կենդանի կապը, մարդկանց կազմակերպելու և նրանց ջանքերը մոբիլիզացնելու հմտությունը։ Մասսաների հետ ղեկավարների կապը կարող է լինել խոր ու կենսական, ինչպես և մակերեսային ու հապճեպ։ Նա պետք է գտնվի մասսաների շրջանում, շփվի նրանց հետ, ցուցաբերի լենինյան պարզություն ու սրտաբացություն, մարդկանց կյանքով ու հոգսերով ապրելու ձգտում, նորի, առաջավորի համար մղվող պայքարում դրսևորի պարտիական կրքոտություն։ Այդ նպատակով նա պետք է լինի համակողմանի կրթված մարդ, անընդհատ հարստացնի իր գիտելիքները, ուսումնասիրի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, արտադրության առաջավորների ու նորարարների փորձը։

Ղեկավար աշխատողը պետք է առավել հոգատարություն հանդես բերի մարդկանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, ժամանակին ուն-

կընդրի նրանց ձայնին և պատասխան տա նրանց հուզող հարցերին։ Ղեկավարի իրական կապը մասսաների հետ (այլ ոչ թե կեղծ, դատարկ ցուցամոլությունը) մեր գործի հաջողության կարևոր պայմաններից է։ Շփումը մասսաների հետ կնպաստի ղեկավարների քաղաքական աճին, կօգնի նրանց ավելի խոր թափանցելու շրջապատի երևույթների մեջ։

Մասսաների հետ կապի ամրապնդման կարևոր պայմանը՝ ղեկավարների կողմից կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների խստիվ պահպանումն է։ Ինչ խոսք, որ սկզբունքային, կարևոր հարցերի կոլեկտիվ լուծման անհրաժեշտ պայմանը ղեկավարության կոլեկտիվ օրգանների նիստերի ու ժողովների սիստեմատիկ գումարումն է։ Սակայն դա հարցի միայն մի կողմն է։ Առավել կարևորը՝ վերոհիշյալ օրգանների աշխատանքի բովանդակությունն է։ Երբեմն այդ նիստերն ու ժողովները այնպես են վարում, որ մարդիկ փաստորեն զրկվում են իրենց կարծիքներն արտահայտելու և պաշտպանելու հնարավորությունից, անքննադատ են մոտենում ղեկավարի ամեն մի առաջարկությանն ու տեսակետին և մեխանիկորեն հավանություն են տալիս դրանց։ Նման պայմաններում կոլեկտիվ ղեկավարությունը սոսկ ձևական է, բացակայում է կոլեկտիվ միտքը և շարունակում է իշխել միանձնյա վարչարարությունը։ Այնինչ կոլեկտիվ ղեկավարությունը՝ դա կոլեկտիվ օրգանի աշխատանքներում նրա բոլոր անդամների ակտիվ մասնակցությունն է և կոլեկտիվ ուժերով հարցերի լուծումը։ Բայց ղեկավարության կոլեգիալությունը երբեք էլ չի նշանակում, թե ղեկավարը անձնական պատասխանատվություն չի կրում հանձնարարված գործի նկատմամբ։

Ղեկավար աշխատողի բնորոշ գծերն են՝ ճշմարտացիությունը, ազնվությունը, հարգանքը սեփական խոսքի նկատմամբ։ Իր հեղինակությամբ մտահոգված ղեկավարը երբեք չի խոստանա այն, ինչ իրագործելի չէ։ Այնինչ, պատահում են առանձին ղեկավար աշխատողներ, որոնք սիրում են աջ ու ձախ խոստումներ տալ, մարդկանց մոտ «լավ մարդ» լինել, առանց նկատի առնելու դրանց կատարման ռեալ հնարավորությունները։ Նման դեպքում նրանց տված խոստումները մնում են անկատար, որով և ղեկավարի հեղինակությունը խիստ ընկնում է. նա կորցնում է լավ ղեկավարին բնութագրող ամենակարևոր հատկանիշներից մեկը՝ մասսաների վստահությունը, հավատը։ Ղեկավարի հեղինակությունը մեծապես կախված է նաև այն բանից, թե ինչպես են կատարվում կոլեկտիվի կողմից ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, թե նա ինչպիսի ջանքեր է գործադրում այն կատարելու ու գերակատարելու համար։

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը մեր զարգացման հզոր գործոններից մեկն են, կադրերի ճիշտ դաստիարակության կարևոր միջոցը։ Սակայն պատահում են դեպքեր, երբ առանձին ղեկավարներ անբարյացակամություն են հանդես բերում և սվիններով են դիմավորում քննադատական ամեն մի ելույթ, այն դիտելով որպես իրենց պաշտոնին ու անձին ուղղված չար դիտավորություն. Նրանք իրենց հաշիվ չեն տալիս, որ ամեն մի քննադատական ճիշտ դիտողություն օգնում է ազատվելու թերություններից ու սխալներից, նպաստում է իրենց հեղինակության բարձրացմանը։ Այսպես, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի վերանորոգող բանվոր Վ. Կոծինյանը ահազանգել էր, որ իրենց գործարանում առանձին մարդիկ զբաղվում են աչքակապությամբ, նկատվում են հավելագրումների ու պետական գումար-



ների յուրացման դեպքեր։ Ստուգումները հաստատեցին այդ ամենը, կեղծարարներն ու պետական միջոցները հափշտակողները մերկացվեցին։ Սակայն այդ բանը դուր չեկավ գործարանի դիրեկտոր, կոմունիստ Գ. Գաբրիելյանին. նա սկսեց հետապնդել բանվոր Կոծինյանին, նրա շուրջն ստեղծել անհանդուրժելի մթնոլորտ։ Ցավոք սրտի, գործարանի պարտկազմակերպությունն ու նրա բյուրոն չգտնվեցին իրենց կոչման բարձրության վրա, հակահարված չտվեցին քննադատության ճնշողին։ Անհրաժեշտ եղավ վերադաս օրգանների միջամտությունը։ Եվ հասկանալի է, որ այս բոլորից հետո տվյալ գործարանի դիրեկտորը չէր կարող հեղինակություն ունենալ կոլեկտիվում, հարգվել նրա կողմից։

Քննադատությունը չեն սիրի ու պաշտպանի միայն անարժան ղեկավարները, հարմարվողներն ու քծնողները, որոնք իրենց պաշտոնազգեստի «պատիվը» պաշտպանելու նպատակով վարկաբեկում են ազնիվ մարդկանց։ Իսկական հեղինակություն է վայելում այն ղեկավարը, որն սկզբունքորեն պաշտպանում է առողջ քննադատությունը, ինքնաքննադատաբար է մոտենում իր գործունեությանը, ճիշտ հետևություն է անում քննադատությունից և շտկում իր աշխատանքում նկատված թերություններն ու սխալները։

Լենինյան տիպի աշխատողի համար խորապես խորթ են մեծամտությունը, անհամեստությունը, ինքնագովությունը, աշխատանքում ձեռք բերված հաջողությունների մեջ իր դերի չափազանցված ընդգծումը։ Նման ղեկավարի համար ուղղակի վիրավորական է, երբ առանձին մարդիկ սկսում են տեղին ու անտեղի ընդգծել նրա դերը, առանձնացնել, մեկուսացնել նրան կոլեկտիվից։ Ինչ խոսք, որ պարտիան ու ժողովուրդը բարձր են գնահատում և պաշտպանում ձեռներեց ու հասուն ղեկավարների հեղինակությունը։

Ղեկավար աշխատողի համար կարևոր են բարոյական մաքրությունն ու անաղարտությունը ընտանիքում, կենցաղում։ Նա պետք է խստորեն պահպանի կոմունիստական բարոյականության նորմերը, իր վարքագծով օրինակ ծառայի կոլեկտիվի բոլոր անդամների համար։ Որքան էլ ղեկավարը սկզբունքային լինի պարտիական կամ պետական աշխատանքին վերաբերող հարցերում, որքան էլ նա ազնիվ ու բարեխիղճ կատարի իր պարտականությունները, այնուամենայնիվ, նա չի կարող իսկական ղեկավար կոչվել և օգտվել անհրաժեշտ հեղինակությամբ, եթե բարոյապես մաքուր չէ, եթե նա խախտում է կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները, եթե կենցաղում նա թույլ է տալիս այլանդակ արարքներ։ Չպետք է մոռանալ, որ ղեկավար աշխատողին մշտապես հետևում ու ընդօրինակում են շարքային աշխատողները։ Ուստի և ղեկավար աշխատողը պետք է խստորեն հետևի իր յուրաքանչյուր քայլին, միշտ և ամենուրեք լինի մաքուր ու ազնիվ, լինի օրինակելի ամուսին և ծնող։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ներկա ժամանակաշրջանում, երբ աճում է աշխատանքում բարոյական ազդակների դերը, ըստ ամենայնի ծավալվում է սոցիալիստական դեմոկրատիան, աստիճանաբար կառավարման ոլորտից դուրս են մղվում վարչական ներգործման միջոցները, անհամեմատ ավելի դժվար է դառնում մասսաներին ղեկավարելը։ Մասսաների նախաձեռնության լայն ծավալման, նրանց գիտակցականության ու կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ներկա պայմաններում այլևս չի կարելի ղեկավարել ընդհանրապես, սահմանափակվել սոսկ ընդհա-

նոր կոչերով, դիրեկտիվներով ու հրամաններով։ Հեղինակություն չի կարող վայելել այն ղեկավարը, ով բացի պրակտիկ գործից ուրիշ ոչնչով չի հետաքրքրվում։ Ղեկավարելու համար միայն անձնական նվիրվածությունն ու բարեխղճությունն այլևս բավական չեն. նրանից պահանջվում է խոր գիտելիքներ, բարձր կուլտուրա, մասսաների ինքնագործունեությունն ու նախաձեռնությունը կազմակերպելու և ուղղություն տալու հմտություն։ Միայն այդ դեպքում ղեկավարը կարող է արդարացնել իր նկատմամբ տածած վստահությունը, իր գործունեությամբ նպաստել առաջընթացին։ Օրինակ, լավ տնտեսավար ու հեղինակավոր մարդ է Ախուրյանի շրջանի Մարմաշենի կոլտնտեսության վարչության նախագահ Մանաս Համբարյանը։ Նա արդեն տասը տարի է, ինչ ղեկավարում է այդ կոլտնտեսությունը՝ իր համեստությամբ ու նվիրված աշխատանքով վայելելով աշխատավորների սերն ու հարգանքը։ Արտաքին փայլի, ձևամոլության տարրերը բացակայում են ընկ. Համբարյանի մոտ։ Նա միշտ իրեն պահում է հասարակ, հանդես է գալիս որպես ընկեր, խորհրդատու, համեստ ղեկավար։ Մ. Համբարյանը այս կամ այն կարևոր հարցը լուծելիս անպայմանորեն խորհրդակցում է ոչ միայն վարչության անդամների ու կոմունիստների, այլև կոլտնտեսության առաջավորների, շարքային կոլտնտեսականների հետ։

Կոլտնտեսության նախագահը համեստ է կյանքում, կենցաղում։ 11 շնչից բաղկացած նրա ընտանիքի բոլոր աշխատունակ անդամները աշխատում են կոլտնտեսային արտադրության մեջ. նրա կինը առաջավոր կթվորուհի է, իսկ դուստրը՝ առաջավոր ճակնդեղագործուհի։ Ընկ. Համբարյանի ջանասեր աշխատանքը մեծապես նպաստել է հաջող կազմակերպելու արտադրությունը. նրա ղեկավարած կոլտնտեսությունն իր ցուցանիշներով շրջանի առաջավոր տնտեսություններից մեկն է։

Կոմունիստների ու անպարտիականների շրջանում մեծ հեղինակություն է վայելում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի պարտիական կոմիտեի քարտուղար Ռուբեն Գալստյանը։ Նրան բնորոշ են պարտիական սկզբունքայնությունը և հետևողականությունը, գործիմացությունը, աշխատողների նկատմամբ պարզ և մտերմական վերաբերմունքը։ Նա ՀԿՊ Կենտկոմի անդամ է, ընտրված է Լենինյան պարտշրջկոմի բյուրոյի կազմում, դեպուտատ է, բայց համեստ է, երբեք չի փորձում ընդգծել իր դիրքը։ Չնայած խիստ ծանրաբեռնվածությանը, օրինակ, նա հետևում և անձամբ ակտիվ մասնակցում է գործարանի ինքնագործ խմբակների աշխատանքներին, հանդիսանում է երգչախմբի անդամ։

Սակայն, դժբախտաբար, մեզանում ամենուրեք չէ, որ ձեռնարկության կամ կազմակերպության գլուխ կանգնած անձը արդարացնում է իր նկատմամբ ցույց տրվող վստահությունը, արդարացնում է ղեկավարի բարձր կոչումը։ Կան առանձին ղեկավար աշխատողներ, որոնք դեռևս տառապում են անհատի պաշտամունքի ժամանակվա հովերով, շարունակում են իրենց դիտել որպես անսխալական, վերևից նայել ստորին աշխատողներին, անտեսելով նրանց կարիքները։ Նման, այսպես կոչված, ղեկավարները առանձին դեպքերում դրսևորում են ցուցամոլություն, իրենց եսը առաջ տանելու տհաճ ձգտումներ, ամեն կերպ աղմկում են իրենց կատարած ու չկատարած գործերի մասին։

Կան և այնպիսի ղեկավարներ, որոնք իրենց սեփական անճարակությունը



կոծկելու նպատակով տալիս են մեծ-մեծ խոստումներ, կոլեկտիվին պարտադրում են ստանձնելու արտադրական բարձր պարտավորություններ՝ առանց կշռադատելու առկա ռեալ հնարավորությունները։

Նման ղեկավարները ոչ միայն չունեն գործի նկատմամբ պատասխանատվության զգացում, այլև զուրկ են անհրաժեշտ ինքնասիրությունից։ Երբ նա տեսնում է, որ ի վիճակի չէ գլուխ հանելու գործից, ապահովելու ստանձնած պարտավորությունների կատարումը, ապա նա պետք է ազնվորեն ընդունի, որ ինքը չի կարող ղեկավարել տվյալ կոլեկտիվը և հրաժարվի զբաղեցրած պաշտոնից։ Դա կլիներ իսկական ինքնասիրության, սեփական արժանապատվության հարգում։ Այնինչ առանձին ղեկավարներ ձախողվելով աշխատանքում, բռնում են աչքակապության, հավելագրումների, պարտիային ու պետությանը խաբելու և այլ հանցագործ մեքենայությունների ուղին։ Այդպիսի մարդկանց մասին Ն. Ս. Խրուշչովն ասել է, որ նրանք բյուրոկրատներ են, նրանց անհանգստացնում է միայն իրենց պաշտոնազգեստի պատիվը։

Ավելին, առանձին մարդիկ չարաշահում են իրենց պաշտոնը, հանցավոր գործարքների մեջ են մտնում զանազան խարդախների ու սպեկուլյանտների հետ, յուրացնում ու հափշտակում են պետական ունեցվածքը, կամ նրանց թողտվության հետևանքով վատնվում են պետական միջոցները։ Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայի նախկին դիրեկտոր Ա. Ավետիսյանի, ամբարձիչ սարքերի գործարանի նախկին դիրեկտոր Լ. Օգանովի, Հոկտեմբերյանի պահածոների գործարանի նախկին դիրեկտոր Ե. Մարգարյանի ապաշնորհ ղեկավարության և հանցավոր արարքների պատճառով, այդ ձեռնարկություններում հափշտակվել են պետական հսկայական միջոցներ։ Այդ ամենի համար հանցավորները ստացել են իրենց արժանի պատիժը։

Որոշ ղեկավարների մոտ ուժեղ են կարիերիզմի և բյուրոկրատիզմի միտումները։ Նրանք իրենց ենթակաների վրա նայում են վերևից, հաշվի չեն առնում նրանց կարծիքը, նրանց հետ կոպիտ են վարվում, վիրավորում են նրանց արժանապատվությունը և այնպես են պատկերում, թե իրենք ծնված են հենց ղեկավար լինելու համար։ Նրանք մոռանում են, որ ղեկավար պոստ գրավելը ո՛չ ցմահ է, ո՛չ էլ ժառանգական։ Մինչև վերջերս Դիլիջանի № 5 ճանշինշրջանի պետ էր աշխատում Մ. Խալեյանը։ Նա իր ղեկավարած հիմնարկում ստեղծել էր այնպիսի վիճակ, որ ոչ ոք չէր համարձակվում խոսել նրա աշխատանքի թերությունների մասին։ Ամեն քայլափոխում կոպտում էր կոլեկտիվի անդամներին, գռեհկություններ ու կամայականություններ թույլ տալիս։ Խալեյանը նույնիսկ ձեռք էր բարձրացրել բանվորի վրա։ ՀԱՄԽ-ի նախագահությունը միանգամայն ճիշտ գնահատական տվեց այդ աննախադեպ երևույթին, գտնելով, որ Խալեյանը չպետք է մնա ղեկավար աշխատանքում։ Նա ազատվել է իր գրաված պոստից։

Պարտիայի XXII համագումարում Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ յուրաքանչյուր ղեկավար պետք է հասկանա, որ ինքը իրավունք չունի մեծամտել իր գրաված դիրքով, միշտ պետք է հիշի, որ գրավելով այս կամ այն պոստը, նա կատարում է սոսկ պարտիայի կամքը, ժողովրդի կամքը, որոնք նրան օժտել են թեկուզ ամենաբարձր իշխանությամբ, բայց երբեք չեն կորցնում վերահսկողությունը նրա նկատմամբ։ «Այն մարդը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— որը մոռանում է, որ ինքը պարտավոր է կատարել պարտիայի կամքը, ժողովրդի կամքը, ի դեպ ասած, չի էլ կարող իսկական ղեկավար անվանվել, մեզանում

այդպիսի «ղեկավարներ» չպետք է լինեն ո՛չ պարտիայում, ո՛չ էլ պետական ապարատում»։

Ղեկավար աշխատողի համար պետք է բնորոշ լինի անհաշտությունն այն ամենի նկատմամբ, ինչը խորթ է մեր հասարակարգին, ինչը խանգարում է մեր առաջընթացին։ Եթե մարդը զուրկ է այդ հատկանիշից, ավելի շատ մտածում է իր գրաված պոստի, իր սեփական բարեկեցության մասին, ապա նա իսկական ղեկավար չէ, այլ կարիերիստ է, որին գործը հետաքրքրում է այնքանով, որքանով որ այն պետք է իր գրաված պոստում հնարավորին չափով երկար մնալու համար։

Կարիերիզմը և բյուրոկրատիզմը ծանր չարիք են և մեծ վնաս են պատճառում մեր ընդհանուր գործին։ Դրանց իսպառ վերացումը մեր ամենաառաջնահերթ խնդիրներից մեկն է։ Դժբախտաբար, մեզանում կան առանձին կոմունիստներ, որոնք պարտիայի շարքերում իրենց գտնվելը դիտում են որպես իրենց անձնական կարիերան ավելի լավ դասավորելու միջոց։ Անցնելով պարտիայի մեջ, նրանք կարծում են, թե արդեն ձեռք են բերել անպայման ղեկավար պոստ գրավելու ինչ-որ հատուկ իրավունք և այսուհետև շարքային աշխատանք չեն կարող տանել։ Նույնիսկ այս կամ այն աշխատանքում չարդարացնելու պատճառով, երբ նրանց աշխատանքից ազատում են կամ իջեցնում ավելի ցածր աշխատանքի, նրանք իրենց վիրավորված են համարում և հրաժարվում են տվյալ վայրը աշխատանքի գնալ, պահանջելով ավելի բարձր պոստ։ Ավելորդ է ասել, որ այդպիսի վերաբերմունքը ոչինչ ընդհանուր չունի պարտիայի անդամի բարձր կոչման հետ։

Անժխտելի է, որ ղեկավարի անձնական հատկանիշները, նրա գիտելիքները և աշխատանքային փորձը հսկայական նշանակություն ունեն տվյալ հիմնարկության կամ ձեռնարկության համար։ Դրանք անխուսափելիորեն իրենց կնիքն են դնում նրանց ղեկավարած կազմակերպությունների ու ձեռնարկությունների ամբողջ գործունեության վրա, մեծ չափով պայմանավորում են նրա հաջողությունը։ Ուստի միշտ ու ամենուրեք պետք է կադրերի ընտրությունը կատարելիս ելնել այն հիմնական սկզբունքից, թե այս կամ այն անձնավորությունը որքանով է համապատասխանում տվյալ պաշտոնին, որքանով նրա գործունեությունը կարող է նպաստել ընդհանուր գործին, արագացնել առաջնահերթ խնդիրների հաջող լուծումը։

Մենք ունենք հիանալի ղեկավար կադրեր, որոնք աշխատանքում դրսևորում են սեփական նախաձեռնություն, հանդես են բերում ինքնուրույնություն և ստեղծագործական մոտեցում գործի նկատմամբ։ Անհրաժեշտ է մշտապես բազմապատկել նրանց շարքերը, ժողովրդական մասսաների շարքերից ջոկել, առաջ քաշել ու դաստիարակել նորանոր արժանավոր գործիչների, որոնք կարող են պատվով կատարել իրենց վրա դրված պարտավորությունները, արդարացնել պարտիայի ու ժողովրդի վստահությունը և իրավամբ կոչվել ղեկավար գործիչներ։

---

# ՀԱՐՑ ՄԵՐ ՀԱՆԱՊԱԶՕՐՅԱ

**Ա. ԱԴՈՅԱՆ**

(Հրապարակախոսի մտորումներ)

Այդ ո՞ր տառապանքն է, որ կարող է ավելի շատ զեղվել գեղեցիկ բնության առջև, քան ազնվագույն, վսեմ և տանջանքներից ամենաանհատականը՝ սիրո տվայտանքը:

Ֆ. Էնգելս

*Ինչ որ եղել է՛, նույնը պետք է լինի՛, ու ինչ որ կատարվել է՛, նույնը պիտի կատարվի՛. և արևի տակ ոչինչ նոր բան չկա՛։*

Ամենևին ո՛չ։ Այնպես չեղավ, ինչպես 27 դար առաջ կարծում էր Հրեաստանի տրտում իմաստունը։ Եղավ միանգամայն այլ կերպ. այնպես, որպես երբեք չէր եղել, բայց երազվել էր։ Բարկ արևի տակ շատ բաներ փոխվեցին, գահեր խորտակվեցին, նոր հասարակական կարգեր առաջացան։ Մերժելով կյանքի ունայնության և քարացածության վարդապետությունը, կոմունիստները ժողովուրդների գլուխն անցած ծառս ելան պատմության անագորույն ընթացքի դեմ, պատնեշեցին մարդկության արցունքի ու արյան հեղեղը և այս հավերժական արևի տակ կերտում են մի աշխարհ, որի անունը կոմունիզմ է։

## ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՈՒՂԵԾՐՈՒՄ

Հասարակական կյանքը վարից վեր փոխող սոցիալիստական ռևոլյուցիան իր սրընթաց հոսքում առավ նաև ընտանեկան հաստատությունը։ Հասարակական-տնտեսական միանգամայն նոր հարաբերություններով կազմավորվող, լենինյան գաղափարներով շնչող նորաստեղծ սովետական կարգն իր հաստատումը նշանավորեց նաև հեղաշրջելով հասարակական կյանքի մոլեկուլը՝ ընտանիքը։ Բնական է, որ սոցիալական նոր հարաբերությունները վաղ թե ուշ պետք է պարարտ հող պատրաստեին նոր մարդու զարգացման համար։ Հոգեպես կծղած, բարոյապես հյուծված և ֆիզիկապես տխեղծ կապիտալիզմի քաղաքացին չէր, որը կոմունիզմ պետք է կերտեր։ Դա՝ սոցիալիզմի կառուցման հերոիկայում աճած ու դաստիարակված, կոմունիստական գաղափարներով տոգորված, սովետական ընտանիքից սերված նոր մարդն է, որն ապրում և ստեղծագործում է մեր օրերում։

Ամուսնության և ընտանեկան ոլորտում ևս մեր առաջխաղացումը հսկայա-

կան է ու արմատական։ Քաղաքացիական ամուսնության, ապահարզանի ու
երեխաների խնամքի վերաբերյալ լենինյան դեկրետները (1917 թ.), ամուս-
նական կոդեքսը (1918 թ.) իրական մոնոգամիայի (միամուսնության) հաս-
տատուն հիմքերն արկանեցին։ Կինը հռչակվեց տղամարդուն հավասար՝ տնտե-
սության, հասարակական գործունեության և կուլտուրայի բնագավառներում։
Սահմանվեց ամուսնության և ընտանեկան կապերի ամենաբանական և հու-
մանիստական մի սիստեմ։ Վերացնելով անառակության և գործարքի վրա
հիմնված բուրժուական ընտանեկան կապերը, սոցիալիստական օրինականու-
թյունը սերը կարգեց որպես նոր ընտանիքի միակ հիմքը։

Այսպիսով, պատմության մեջ առաջին անգամ վերացավ կնոջ երկակի
շահագործումը և սովետական ազատագրված կինը ամուսնու հետ ուս-ուսի
հասարակական կյանքի ուղեծիր դուրս եկավ։ Իրականում ապահովելով կնոջ
համար ամուսնուց անկախ տնտեսական-արտադրական ֆունկցիա, ստեղծե-
լով նրա քաղաքական և կուլտուրական զարգացման նախադրյալները, սովե-
տական կարգերը հաստատուն հիմքեր տվին ընտանեկան հարաբերություն-
ների կատարելագործման և բյուրեղացման համար։ Պատմության գիրկն ան-
ցավ բուրժուական ընտանիքի և ամուսնության հայ ժողովրդի տված դիպուկ
բնորոշումը՝ «մարդ ու կին, ջարդուկին»։

ՍՍՌՄ սոցիալիստական մեծ վերափոխումների ու կուլտուրական ռևոլյու-
ցիայի պտուղ ջրապտույտներում աստիճանաբար ռեալ հիմքեր գոյացան երկու
սեռի ներկայացուցիչների մարդկային հարաբերությունների, սեռական սիրո,
զավակների ճիշտ դաստիարակության համար։ Միայն 1923—1929 թթ. ըն-
թացքում ՍՍՌՄ խոշոր արդյունաբերության մեջ աշխատող կանանց թիվը 403
հազարից հասավ 804 հազարի, այսինքն՝ բանվորների 34,2 տոկոսի։ Դեռևս
1959 թվականին մեր երկրում ֆիզիկական և մտավոր աշխատողների 48 տո-
կոսը կանայք էին, որոնցից մտավոր աշխատողները կազմում էին 53,9 տո-
կոս։ Նույն թվականին կին ինժեներների թիվը հասավ 268,4 հազարի։ Անցյալ
ուսումնական տարում երկրի բուհերում սովորում էին 1042 հազար կանայք։

Այս փաստերը վկայում են, որ սոցիալիզմի կառուցման տարիները հան-
դիսացան սովետական ընտանիքի ամրապնդման, զարգացման ու կատարե-
լագործման ժամանակաշրջան։ Ընտանիքի զարգացմանն են նպաստում, ան-
շուշտ, մահացության խիստ նվազումն ու բնակչության արագ աճը մեր երկ-
րում։ Մինչռևոլյուցիոն շրջանի համեմատությամբ մահացությունը նվազել է
չորս անգամ, իսկ մանուկներինը՝ 6 անգամ։ Թե՛ մահացության նվազ տոկոսով
և թե ծննդաբերության բարձր մակարդակով մեր Հայրենիքում գործերն ան-
համեմատ լավ են, քան կապիտալիստական որևէ երկրում։ 1958 թվականին
ՍՍՌՄ բնակչության հազար շնչին ընկնում էր 12,5 ամուսնություն, ԱՄՆ-ում՝
8,3, Անգլիայում՝ 7,6, Ֆրանսիայում՝ 7։ Մեզ մոտ հարյուր ամուսնությունից
ապահարզանը կազմում է 8,5 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 26,3 տոկոս (երեքից
ավելի անգամ)։ Սրանից հետո զարմանալի չէ, երբ ԱՄՆ-ում (միայն 1953
թվականին) գրանցված ապօրինի զավակների թիվը հասնում է 180 հազարի։

Ահա թե ինչու գոհունակությամբ նշում ենք, որ անցած 45 տարիներում
սովետական ընտանիքը դարձել է կոմունիզմի քաղաքացիների դաստիարակ-
ման հուսալի օջախը։ Ինչպես մեր տիեզերագնացներն են սավառնում մարդ-
կության առաջընթացի եթերում, այնպես էլ իր բարոյական հատկություննե-



րով և ստեղծագործ սխրանքներով, ամենից պայծառ սովետական ընտանիքի
կերպարն է երևում։ Կոմունիստական աշխատանքի բրիգադաների անդամների
առօրյա հարաբերություններում, ինչպես և միլիոնավոր քաղաքացիների նիստ
ու կացում արմատավորվում են հումանիզմի ու վառ սիրո բերկրալի ծիլերը։

Իհարկե, հեշտ ու խաղաղ չի եղել նոր ընտանիքի ուղին. հաճախ նրան
ընթացակցել է հին աշխարհի լքված ամուսնական հարաբերությունների ստվե-
րը, որը հաղթահարվում է դիմընթաց պայքարով։ Հայրենական պատերազմի
հետևանքով եղած ավերածություններն ու անձի պաշտամունքի օրոք տեղ
գտած ապօրինությունները զգալի հարված հասցրին և ընտանիքի պատնեշնե-
րին։ Բայց ՍՄԿՊ-ի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ դրանք հաղթա-
հարվում են։ Ինչ էլ լինի, սովետական նոր սերունդը մի քանի գլխով բարձր է
կանգնած բուրժուական աշխարհի բարոյալքված սինլքորներից։

## ԵՐԿՈՒ ԱՇԽԱՐՀ, ԵՐԿՈՒ ՍԵՐ

Ինչպես նշեցինք, սոցիալիստական հասարակության լինելության պրո-
ցեսում հիմնովին փոխվեցին և ամուսնական-ընտանեկան հարաբերություննե-
րը։ Ամուսնու և կնոջ իրոք անկաշկանդ, անկախ և անշահախնդիր կապերը
բուն սիրո զարգացման համար պարարտ հող ստեղծեցին։ Ընտանեկան կյան-
քի ոլորտից հիմնականում դուրս մղելով գույքային և այլ կարգի նյութական
նկատառումները, կոմունիստներն ընտանիքը զրկեցին տնտեսական ֆունկ-
ցիայից։ Մեր ընտանեկան բույնն այսօր հյուսվում է սիրո, բարոյական նոր-
մերի ու կոմունիստական հայեցողության տարրերից։ Տղամարդու և կնոջ միջև
պատմության բացած անկամրջելի թվացող վիհը լցվում է բարոյական մի նոր
ջաղախով։

Ամենուր և զանգվածորեն աշխատավորներն իրենց ընտանեկան երջան-
կության ուղին են հարթում հորդաբուխ զգացմունքների ու սեփական խղճի
թելադրանքով։ Անձնական երջանկության միահյուսումը հասարակական
բարօրության հետ՝ մեծապես նպաստում է ընտանիքի անդամների խառնվածք-
քի ազնվացմանը։ Լծվելով ընտանեկան կյանքի ամոլին ամուսնուն հավասար,
կինը դարձավ թե՛ ընտանիքի և թե հասարակական առաջխաղացման վիթխա-
րի մի ուժ։

Հետևաբար, սովետական ընտանիքի հենասյուները՝ գաղափարական միա-
տարրություն, շահերի ընդհանրություն, սրտաբուխ սեր, փոխադարձ հարգանք
և վստահություն, այնպես ցեմենտեցին նրա հիմքերը, որ այն իրոք անսասան
է։ Ստեղծագործական աշխատանքի, զավակների սիրո հաճույքի ճաշակման
և կյանքի արգելքների հաղթահարման բովում ավելի բյուրեղանում է սովե-
տական ընտանիքի «ադամանդը»՝ կենսաբեր սերը։ Նրա մաշկի վրայից թափ-
վում են տեղ-տեղ մնացած բուրժուական էգոիզմի, ամարդության և նվաստու-
թյան թեփուկները։

Ո՞վ կարող է հերքել, որ մեր ընտանիքն այսօր օժտված է վերևում թվար-
կած հատկանիշներով, եթե ոչ բոլորով, ապա առնվազն մի քանիսով։ Մենք
ականատես ենք այն իսկությանը, երբ մեր մեծ Հայրենիքի արտադրողական
ուժերի բուռն ծաղկման հետևանքով փթթում են նաև ամուսնական ոլորտի
հարաբերությունները, իրենց հետևում թողնելով հաշվենկատության վրա հիմ-
նըված հին ընտանիքի կենսախեղդ փոշին։ Տղամարդկանց մեծ մասը խոր գի-

տակցելով և բարյացակամորեն (իսկ որոշ մասն ախոսանքով ու քրթմնջո-
ցով) տեղի է տալիս կնոջ՝ որպես իրեն հավասարի օրինական պահանջներին։
Ավելորդ է խոսել այստեղ այն սակավաթիվ տղամարդկանց մասին, ովքեր
դեռևս մնում են Ադամ-Եվայի փոխհարաբերությունների մակարդակին։

Պատմական փաստ է, որ երկու սոցիալ-տնտեսական սիստեմներն այսօր
ունեն սիրո տարբեր ըմբռնումներ և իրենց բազխին համապատասխանող
իրարամերժ ընտանեկան հաստատություններ։ Բուրժուական ընտանիքի տե-
սության ու պրակտիկայի բնորոշ են երկու հանգամանք։ Այստեղ ամենից
շատ տարածված է Զիգմունդ Ֆրոյդի (1856—1939 թթ.) հակագիտական այն
հայացքը, թե մարդու ամբողջ վարքագծի հիմքում դրված է լիբիդոն (սեռա-
կան, բնազդական ներքին մղումը), որով և պայմանավորված են մարդկանց
բարդ հասարակական գործունեությունը, ինչպես և ընտանեկան բոլոր կապե-
րը։ Կնոջ և ամուսնու հարաբերությունները հանգեցնելով Ֆրոյդի քարոզած
սեքսին՝ սեռականին, բուրժուական ընտանիքը դրան ավելացնում է նաև նյու-
թական և փողային գործարքի պրակտիկան։ Այս երկու խարխլված և փտած
սյուների վրա է վաղուց տարուբերվում կապիտալիստական աշխարհի ըն-
տանիքը։

Քանի որ իրականում մարդը հասարակական կակ է (բիոլոգիականով
հանդերձ), ապա նրա վարքը, էմոցիաները, ինչպես և սեռական հակումն
իրենց վրա կրում են հասարակական հարաբերությունների կնիքը։ Հոգեկանի
շարժառիթները պետք է որոնել գերազանցապես սոցիալական ոլորտում, և
ոչ թե «անփոփոխ» բնազդում։ Անգամ ռոմանտիկական սեռական սերը մարդ-
կանց մոտ ծագել է միայն պատմական որոշ շրջանում, անկախ որից սեռա-
կան ճանապարհով և հետո ընտանեկան ձևով բազմացել են դարեր ի վեր։
Իրականում տարբեր սեռերի առկայությունն ինքնին սիրո պատճառ չէ և ոչ էլ
դրա միակ հիմքը։ Շատ ճիշտ է ասում ամերիկյան նշանավոր հոգեբույժ Ջո-
զեֆ Ֆուրստը, երբ ընդգծում է. «Տղամարդու և կնոջ հարաբերությունները և
միմյանց հանդեպ տածած զգացմունքները տարբեր հասարակություններում և
նույնիսկ մեր հասարակության մեջ (կապիտալիստական — Ա. Ս.), այնքան
զանազան են, որ դրանք բավարար չափով չի կարելի հասկանալ, հենց ելնելով
սեռի՝ որպես բիոլոգիական գործոնից» (Д. Фурст, Невротик, его среда и
внутренний мир, стр. 125)։

Սովետական ընտանիքի ողջ պրակտիկան ապացուցում է այս դրույթի
ճշտությունը։ Մի դրույթ, որը ելնում է սիրո պրոբլեմին նվիրված Ֆ. Էնգելսի
հոյակապ շարադրանքից (տե՛ս «Ընտանիքի, մասնավոր սեփականության և
պետության ծագումը») և սովետական ընտանիքի հարուստ փորձի հետազո-
տումից։

Բուրժուազիան բանի տեղ չդրեց իր դարաշրջանի ծնունդ Շեքսպիրի ասա-
ծը, թե ճարկադրված ամուսնությունը դժոխք է, իսկ սիրով ամուսնությունը*
դրախտի շեմքը։ Հաստատելով տղամարդու բիրտ ուժի ինքնահաճ իշխանու-
թյունն ընտանիքի ներսում, բուրժուազիային մնում էր կանանց սփոփել
նրանով, թե իգական սեռի ստրկացումը ոչ այլ ինչ է, քան՝ «մարդի շվաք,
վարդի շվաք»։

Հաղթանակած պրոլետարիատը չէր կարող շվանել այս ահավոր սուտը։
Նա կյանքի ու մարդկային սրտի հետնախորշերից վառ արևի տակ բերեց երկար
դարերով վտիտ վիճակում մնացած մարդկային ամենանվիրական և հզոր



ձգտումներից մեկը՝ ռոմանտիկական սեռական սերը։ Եվ իր մրրկահավի շուր-
թերով հավաստեց, որ կյանք առանց սիրո, գոյություն է, այլ ոչ կյանք։ Ահա
թե որպիսի ըմբռնումն է լծորդում սիրո հրայրքներով լի սովետական ամու-
սիններին։

Մեռնող կապիտալիզմի մի շարք ողջախոհ մտածողներն անգամ ստիպ-
ված են նշել ընտանեկան պրոբլեմի, կանանց հարցի վերջնական լուծումը
ՍՍՌՄ-ում։ Հենց վերջերս լույս տեսած իր մի երկում Բերտրան Ռասելը զայ-
րույթով և ճշմարտացի նկատում է, թե ամուսնության և կայուն ընտանիքի հա-
մար, սեռականն առանց խոր սիրո, իրական հաճույքի ու բավականության
աղբյուր չի կարող լինել։ «Սիրո ամենավտանգավոր թշնամին բիզնեսի ավե-
տարանն է»։

Սո՛ւր, դիպո՛ւկ և իրավացի՛ է ասված։

Ամերիկյան ապրելակերպի երկրպագուի ուշքն ու միտքը երկու բևեռներ
ունի՝ խժռումը և սեռական հագուրդը։ ԱՄՆ-ի ամբողջ տերիտորիայի վրա
մարդիկ իրենց ժամանակը, ուշադրությունն ու ջանքերը գլխավորապես հատ-
կացնում են ֆիզիկական հաճույքներին, որոնց մեջ գլխավոր տեղը գրավում
է կերուխումը։ Այսպես են գրում ԱՄՆ-ի առաջավոր մտածողներ՝ Էլեն և Սկոտ
Նիրինգ ամուսինները։ Սրանց զարմանքն է պատել, թե որպիսի՜ արագությամբ
այլասերվում է ամերիկյան պատանեկությունը։ Ծխելը, ալկոհոլի մշտական
գործածությունը և սեռական հարաբերությունները կրտսեր դասարաններում
հազվադեպ չեն, սակայն բարձր դասարաններում դա ավելի շատ կանոն է,
քան բացառություն... Նման հետևանքները սպասելի էին, եզրակացնում են
Նիրինգները (տես Элен и Скот Ниринг, США сегодня, стр. 40)։

Իսկ ո՞րն է ամերիկյան նոր սերնդի վերասերման հիմնական պատճառը։
Դա կապիտալիստական կարգերի ու բարքերի ոտքից գլուխ նեխումն է։ Հար-
ցին քաջածանոթ վերոհիշյալ սոցիոլոգները քանիցս ընդգծում են, թե ամե-
րիկացիների մեծ մասի կյանքը պարզապես ֆիզիկական գոյություն է, պեր-
ճանք, վայելք, գրգիռ և բավարարում։ Բոլորին, վերևից մինչև վար (իսկ վե-
րևում ավելի շատ), մտատանջում է ընդհանուր անվստահության զգացումը,
գրում են նրանք։

Դրան հակառակ, Սովետական սոցիալիստական երկրում փոխադարձ
նվիրվածության և համախոհության, անկեղծության և համագործակցության,
հարգանքի ու վստահության մթնոլորտում գնալով ամրանում է ընտանիքը, որի
համար ռոմանտիկական սեռական սերը ոչ միայն սերնդի վերարտադրության,
այլև ամուսինների մարդկայնացման կարևորագույն ազդակն է։ Սովետական
ընտանիքը կոմունիզմի կառուցման անփոխարինելի գործոններից մեկն է։
Այդ է, որ միշտ թարմ է պահում նրա կյանքի օդը։ Բայց և այնպես, որքան էլ
սովետական ընտանիքը բարգավաճի, մենք չպետք է անտեսենք նորի հին
վերքերը։ Ընտանեկան օջախը և ամուսնական նիստուկացը համեմատաբար
շատ ուշ են փոխվում։ Չէ՛ որ մենք էս Մասիսի ձյունաթույր կատարից չենք
իջել, այլ եկել ենք (հասարակության մի մասը) հին աշխարհի փոշեխառն
երթից պոկված, ինքնահաստատմամբ, ինքնաքննադատությամբ։

Չենք երկմտում, որ ազատագրված անհատն իր իսկ կազմակերպած բա-
նական կարգերի ու դաստիարակության շնորհիվ կճկի և ապա կփշրի հին մար-
դու պոզերը, որոնցով նա մերթ հարում է ոչ միայն իր դրացուն, այլև կնոջն
ու զավակներին։ Գիտենք, որ հազվագյուտ չէ այն մարդկանց թիվը, ովքեր

շարունակում են հավատարիմ մնալ դարերի մուժից եկող նայիրյան (և ոչ միայն նայիրյան) այն առածին, թե «հարսը կեսրոջ ղուլն (ստրուկն) է»: Սակայն հինը տեղի է տալիս նորին ամե՛ն օր, ամենո՛ւր:

Մենք հաստատ համոզված ենք, որ սիրո հիմնաղբյուրը ամենևին էլ բիոլոգիական բնազդը չէ, այլ հասարակական համակեցության և հոգեհարազատության ձգտումը, զոդված սեռական մղումի հետ, որն անպայման փոփոխվում է ու զարգանում հասարակական կյանքի ազդեցության ներքո: Ապացույցի կարոտ չէ այն ճշմարտությունը, որ կնոջ «պակասությունները» (տղամարդկանց ասելով) բիոլոգիական չեն, այլ հետևանք այն հասարակության ճնշմանը, որտեղ կինը երկակի լուծ է քաշել:

Մի՞թե կարելի է անտեսել, որ կնոջ դարավոր պայքարը տղամարդու բռնության դեմ, նրա հոգում ծնել է կարեկցանքի, քնքշության, բարության, մեղմության, ներողամտության, նվիրվածության և տոկունության այնքա՜ն արժեքավոր հատկություններ: Աշխարհի առաջավոր կանայք կուշտ ծիծաղում են այն «գիտնականության» վրա, ըստ որի, կանայք իբր թե ամուսինների հետ կովում են լոկ այն բանի հետևանքով, որ իրենք զուրկ են տրամաբանությունից: Եվ բուրժուական ինտելիգենցիան ուզում է նման մածուցիկ «թեորիաներ»-ով ոսկեզօծել ցեխոտված հին ընտանեկան տան պատերը:

Զո՜ւր ջանքեր, կործանվա՜ծ բարքեր:

## ՆՈՐ ՕՐՐԱՆԸ

Չարենցն իրավամբ կույսի խոստումնալից հայացքը երիտասարդի համար սահմանված բարիք էր համարում: Մի բարիք, որի վայելքը որպես «քնքշաբույր գարուն», սիրով բռնվածի առջև բացում է կյանքի թովիչ «արևային դաշտը», ուր նա քաղելու է «վարդեր ու մանուշակներ»: Սակայն վարդերի քաղն ու վայելքը տարբեր բաներ են: Վայելքը տվյալ դեպքում արգասաբեր է և օգտակար, երբ ամուսնացող քաղաքացին դա իր նպատակը չի համարում:

Նոր կյանքի շեմին կեցած սովետական երիտասարդին պոետը խորհուրդ էր տալիս ասելով.

Փա՜ռք քեզ, երբ լինես քո օրերի հետ դաշն
Եվ օրերից հանդեպ երկարյա քղանցք չհագնես...

Եվ ահա, ամուսնական իր բույնը հյուսելիս, սովետական պարմանին պետք է մոռանա, որ ընտանիքի հիմքերն ու բովանդակությունը մեզ մոտ նախկինը չեն: Մեր ընտանիքը նոր մարդու օրրանն է: Օրերի հետ դաշն լինել, նշանակում է ամուսնական կյանքի հիմքում դնել ոչ միայն սիրո, մանուշակների ու վարդերի գգլիչ հաճույքը, այլև մեծ կոլեկտիվի, կոմունիզմի կերտման ամբողջական շահը, առաջինը զուգակցել ու ենթարկել երկրորդին: Դաշն լինել մեր օրերի հետ, նշանակում է թևակոխելով ամուսնական սեմից ներս, այն դարձնել նոր սերնդի դաստիարակման լավագույն օրրան, որի ճոճքից մարդն է անվերջ նորանում, կատարյալ դառնում:

Չպետք է մոռանալ, որ դեռ երկար ժամանակ երեխաների դաստիարակության ու խնամքի հոգսը մնում է սովետական ընտանիքի կարևորագույն ֆունկցիաներից, բարոյական պարտականություններից մեկը: Ուստի երջա-



նիկ են այն ծնողները, որոնց զավակները ևս կյանք մտնելիս իրենց «օրերի հետ դաշն» են միշտ: Հասարակության համար պիտանի և ակտիվ քաղաքացիներ դաստիարակելով, ծնողները կատարում են իրենց անմիջական պարտքը: Զավակներին պատվաստելով աշխատասիրության ոգին, ծնողները վաղվա կոմունիզմի անհամեմատ բարձր վարպետներն են կրթում: Իսկ դա մեծ հաճույք և շնորհակալ գործ է: Թեև որքան կոմունիզմը մտնի մեր կյանքի մեջ, այնքան համեմատաբար կնվազի ծնողների՝ մանուկների նկատմամբ ունեցած դաստիարակչական ֆունկցիան:

Մանկամսուրները, մանկապարտեզները, դպրոցները մեծ մասամբ հանգիստանում են նոր սերնդի ձևավորման հիմնական օջախները: Գիշերօթիկ դըպրոցների ծավալվող ցանցը մոտակա տարիներին արմատապես կթեթևացնի ծնողներին երեխաների խնամքի ու դաստիարակության ծանր հոգսից: Սակայն միայն երեխաները չեն, որ դաստիարակվում են ընտանիքում: Ծնողներն էլ կրթելով զավակներին, ավելի խոր են սովորում, վարժելով նրանց հանրային կարգ ու կանոնին, իրենք ևս դառնում են ավելի հանրակեց ու կարգապահ:

Օրինական է, երբ երեխաները դպրոցից և հասարակական միջավայրից ընտանիք են բերում առաջավոր հայացքներ, որի հետևանքով սկսվում է հնոտիներով պատած ընտանիքի ու նորով տոգորված պատանիների պայքարը: Սովետական երեխաներն ընտանիքի ռևոլյուցիոն տարրերն են և դա լավ է: Փաստը մնում է փաստ, որ ընտանիքը մնում է դեռ հնի ու նորի բախումների (երբեմն բուռն և աղմկոտ, մերթ մեղմ, բայց սրտամաշուկ) թատերաբեմ, որում շատ է պատասխանատու ծնողների դերը:

Թյուրիմացություն է կարծել, թե զավակների հանդեպ տածած ծնողների անսահման սերը նպաստում է նրանց ճիշտ դաստիարակությանը: Դա երեխաներին փչացնում է, դարձնելով էգոիստ ու քմահաճ: Եվ քանի գոյատևում է այդ վիճակը, երեխաները չեն ուղղվի: Միաժամանակ չափազանց ցուցամոլ ծնողական սերը դառնում է մանուկների ձեռքին այն երասանակը, որով նրանք իրենց քմայքներն են թելադրում ծնողներին: Ահա թե որտեղից են առաջանում շփացած, եսամոլ, պորտաբույծ և ապերախտ զավակները, թեկուզ բազմերախտ ծնողների հովանու ներքո: Այս էլ ասենք, որ ծնողական ջերմ, բայց զսպված սիրո երաշտը չորացնում է մանկան հոգու կանաչ արտը, ներարկելով նրան տրտմություն, հեզություն, կասկածամտություն, անվճռականություն և այլն:

Մեզ պետք չեն ինչպես սիրուց շփացած, այնպես էլ սիրատոչոր մանուկներ: Անհրաժեշտ է այնպիսի դաստիարակություն ընտանիքում, որը մանուկներին ոչ միայն մեղվաջանություն պատվաստի, այլև հայրենասիրություն, կոմունիզմի մեծ գաղափարներով համակի նրանց հոգեկան աշխարհը:

Հին ընտանիքից մեր ժառանգած մի շարք բացասական գծերից է շռայլությունը, ռեժիմի բացակայությունը տանը: Երբ երեխաները տարիներով ականատես են լինում ցոփության երևույթներին, նրանք ջանում են գերազանցել ծնողներին: Հորդառատ շռայլությունը բացասաբար է ազդում երեխաների վրա, դժվարացնում նրանց դաստիարակությունը: Նյութական և հոգեկան վայելքները միայն այն դեպքում են օգտակար, երբ չափավոր են ու ժամանակին: Բայց դեռևս կան ծնողներ, որոնք աղջիկների զգեստներն օրը երեք անգամ փոխելով, իրենց «հարստությունն» են ցուցադրում, չհասկանալով, որ

այդպիսով նրանք նպաստում են պատանու պճնամոլական հակումների զարգացմանը։ Այդ բանին խթանում է նաև երեխաների հանդեպ տածած ծնողների չափից ավելի խնամակալությունը։ Մինչդեռ մեր ընտանիքը լայն ինքնուրույնություն պետք է տա մանկանը, նրան վարժեցնելով հանդերձ հասարակական կարգ ու կանոնի։

Չկա նորմալ դաստիարակություն, առանց խելոք և կայուն ռեժիմի։ Անվերջ սիրաշահելը կամ կոպտելը, ծեծն ու անտարբերությունը փչացնում են մանկան անարատ հոգին։ Այս ամենը հանգամանքներ են, որոնք էական նշանակություն ունեն նոր մարդու ձևավորման համար։ Այս դեպքում ընտանիքից շատ բան է կախված։ Համօգուտ աշխատանքը, ուսուցումը, սպորտը, օգտավետ խաղերը, ինչպես և ինքնագործ արվեստը կոչված են նպատակահարմար գործադրելու մանկան կուտակվող եռանդը։

Ժամանակն է, որպեսզի ոչ միայն ծնողները, այլև մանկավարժները լուրջ ուշադրություն դարձնեն մատաղ սերնդի սեռական դաստիարակության վրա։ Պատանիների սեռական հիգիենայի հարցը հաճախ բարձիթող վիճակում է մեզ մոտ, որը բացասաբար է անդրադառնում երիտասարդների ֆիզիոլոգիայի ու հոգեբանության վրա։

Մեր կարծիքով, սովետական ընտանիքի զարգացման խթանող պարագաներից մեկն էլ ոչ միայն երեխաների կրթության և դաստիարակության ցանցի արագ աճն է, այլև դաստիարակների ու ծնողների նորմալ փոխհարաբերությունները։ Որ ընտանիքը պետք է համաքայլ ընթանա դպրոցի հետ, դա անկասկած է։ Բայց դա բավական չէ։ Ընտանիքը դպրոցի պասսիվ ուղեկիցը չէ, այլ սրտացավ և անշահախնդիր օգնականը։ Դրանց բախումները փչացնում են երեխաներին։ Երբ դպրոցականը տեսնում է, թե ինչպես իր ծնողները չարաշահելով հասարակական դիրքը, մենամարտի են հրավիրում համեստ ուսուցչուհուն թվաբանության «սխալ» գնահատականի համար՝ սա արդեն հոնքը շինելու փոխարեն, աչքն է հանում։ Իր զավակների աչքում աննվաճ երևալու ցանկությամբ ծնողը շատ բան է փչացնում։ Թեև պակաս չի վնասում մանկան հոգեկան խառնվածքին ուսուցչի աշառու, քինախնդիր և մանրանկատ վերաբերմունքը։ Մեզ թվում է, որ այժմ էլ դպրոցը հսկայական բարերար ներգործություն ունի ընտանիքի վրա և այլ կերպ չի կարող լինել։ Ուրեմն, ծնողների և դպրոցի համագործակցությունն անհրաժեշտ պայման է երկուսի նորմալ զարգացման համար։

## ՎԱՐԴԵՐԸ ԴԵՌԵՎՍ ՓՇՈՏ ԵՆ

Բայց և այնպես, ամենահոտավետ վարդերը փշերով պատած դեռևս բուրում են ու թոշնում։ Քառասունհինգ տարին աննշան ժամանակ է ընտանեկան և ամուսնական հարաբերությունների կատարելագործման համար։ Ճիշտ այնպես, ինչպես վաղ գարնանը ընկուզենու կատարին երևում են մի քանի չորացած «ընկույզներ», այնպես էլ ընտանիքում դեռևս մնում են շոշափելի բաներ հին կյանքից։ Այսպես, օրինակ, դեռևս ամուսինների մի մասը չի հանդուրժում կնոջ արտաընտանեկան աշխատանքը և զանազան ձևերով փորձում է նրան վերադարձնել խոհանոց։ Որոշ բախումներ ծագում են սրանից։ Դժբախտաբար քիչ չէ այն տղամարդկանց թիվը մեզ մոտ, որոնք կնոջ հիմնական և միակ ֆունկցիան մանկածնությունն են համարում։ Ավելի քան կես



դար առաջ շվեդուհի Էլլեն Քեյը ևս համառորեն պրոպագանդում էր կնոջ վերադարձը խոհանոց, ասելով՝ կինը կոչված է տաղանդներ ծնելու, բայց ոչ իր տաղանդն օգտագործելու։

Սա մեր ուղին չէ։ Մենք ասում ենք, որ կինը չի կարող օգտվել ռևոլյուցիայի բարիքներից, եթե նա տնտեսական, հասարակական և կուլտուրական մարզերում տղամարդու հետ հավասար չընթանա։ Առանց մանուկների հասարակական դաստիարակության ընտանիքը լիակատար երջանիկ լինել չի կարող։ Ինչո՞ւ։ Որովհետև խոհանոցը կնոջ կյանքի ու թարմության չորանոցն է։ Դրա համար Լենինը կշտամբում էր այն կոմունիստներին, որոնք չէին օգնում կանանց խոհանոցային գործերում և տանն իրենց պահում էին կարգադրողի դերում։ Նա ասում էր. Կնոջ իսկական ազատագրումը, իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքարը (պետական իշխանությանը տիրապետող պրոլետարիատի ղեկավարությամբ) տնային այն մանր տնտեսության դեմ, կամ ավելի ճիշտ՝ նրա մասսայական վերակառուցումը որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն (տես, Երկեր, հ. 29, էջ 526)։

Ահա թե որն է մեր ընտանիքի զարգացման ուղին՝ հասարակական սննդի, մանուկների խնամքի ու կրթության հասարակական կազմակերպումը։ Եվ այդ նպատակով էլ պարտիան ու կառավարությունը միջոցներ չեն խնայում այն բարելավելու համար։ 1940 թվականի 24 հազարի փոխարեն, 1960 թվականին ՍՍՌՄ-ում գործում էին 43,6 հազար մանկապարտեզներ ու մսուր-պարտեզներ։ Հասարակական սննդի, լվացքատների ցանցի ծավալումը գալիս է վերջնականապես թեթևացնելու կնոջ վիճակը տանը։ Եվս երկու տասնամյակ և մանուկների ու ծնողների կյանքը մեր երկրում կդրվի այնպիսի բարձրության վրա, որը մեզ հիմա դժվար է երազել։

Նոր ընտանիքին հաճախ ճնշում են հին սովորությունները. տանը կազմակերպված խնջույքներին սպասարկում են միայն կանայք, որոնք սեղան չեն նստում։ Որոշ ծնողներ դեռևս շարունակում են հարս ու փեսա ճարել որդիների ամուսնությունը «նպատակահարմար» գլուխ բերելու համար։ Կան ամուսիններ, որոնք գերադասում են տղան աղջկանից և վերջինս ծնվելու դեպքում անվերջ կշտամբում են կնոջն այդ «պակասության» համար։ Ոմանք առանց արժեքավոր օժիտի հարս չեն ուզում։ Բազմաթիվ ամուսիններ ստիպում են կանանց ապրել իրենց ծնողների հետ մի հարկի տակ։ Եվ քիչ չեն դեպքերը, երբ վերականգնվում է տնային ստրկությունը՝ երիտասարդ հարսը դառնում է տեգրոջ ու սկեսրոջ աղախինը։ Եթե ոչ, բացվում է կռիվների շարանը։ Այստեղից էլ բազմաթիվ ապահարզաններ։

Դեռևս զգալի է այն տղամարդկանց թիվը, ովքեր անհարմար են զգում շուկա գնալ, դա կանացիական գործ համարելով։ Որոշ ծնողներ շտապում են աղջկան մարդու տալ, բայց ոչ բարձրագույն կրթություն։ Ամուսնալուծությունների զգալի մասը հետևանք է այն բանի, որ ծնողները պսակում են զավակներին հակառակ նրանց սիրո հակումների։ Այստեղ դեր են խաղում գույքային, նյութական, կարիերիստական և սնափառության նկատառումները։ Կան և դեպքեր, երբ ոմանք ամուսնանում են բռնությամբ։ Հաճախ ընտանեկան անդաստանում հանդիպում ենք ալկոհոլով տառապողին և ամուսնական սովորական դավաճանողին։ Կան որոշ կանայք, որոնք հաճույքով օգտվում են վարձու աղախինների աշխատանքից և ազատվում տնային հոգսից։ Սա ևս հին ըն-

և ամուսնանում են մի «բացառիկ» տաղանդի հետ, որն ամուսնական կյանքի համար շատ սովորական և անճարակ մարդ է։ Սկսվում են գժտություններն ու հիասթափությունները և այլն։ Մերթ տեսնում ենք ամուսնացողների տարիների աչք ծակող տարբերություն, որի հիմքում նյութական կամ փառքի նկատառումներն են դրված և այլն։

Ինչևէ։ Սերը բացառում է բոլոր կարգի հաշվապահությունները։ Դրա ձգտման էությունը՝ հոգիների միաձուլումը և սիրո առարկայի տիրապետումն է։ Իսկ սա մի պրոցես է, որը ենթակա չէ պլանավորման։ Եվ առհասարակ խիստ կանխամտորեն սիրողները երբեք չեն ճաշակում իրական սիրո հաճույքը։

Եվ վերջապես, չի կարելի օբյեկտիվ արգելքներ չհամարել մեր ընտանիքի զարգացման ճանապարհին՝ ընչաքաղցությունը, մեշչանականությունը, կրոնական նախապաշարումները։ Չէ՛ որ սրանց պատճառով շատ ուժգին սիրող և օրինակելի սովետական ընտանիքներ են կազմալուծվում։ Ուրեմն, համաձայնվենք, որ վարդերը թեև վառ, սակայն դեռ փշոտ են։

## ԾՆՎԱԾԸ ՊԻՏԻ ԱՊՐԻ

Մի անգամ Նադեժդա Կրուպսկայան նկատել է, որ կոմունիզմ կառուցողների սերն ունի երկու կողմ. առողջ սեռական հագուրդը և ամուսինների գաղափարական ներդաշնակությունը ու միասնական նպատակին ձգտելու համատեղ պայքարը։

Եթե ուշի-ուշով զննենք մեր ընտանիքի էվոլյուցիան, կտեսնենք, որ այդ հունով էլ զարգանում է այն։ Տնարարության աստիճանական վերացումը, մատաղ սերնդի կրթության գործի բարելավումը, ծնողների ու զավակների երբեմնի սեփականատիրական հարաբերությունների անհետացումը, միանգամայն հասարակական նոր լիցք են հաղորդում ընտանիքին։ Մտերմական կապերի ամրապնդման հետ միասին, նրա անդամների «տնային» հարաբերությունները հասարակական հանրօգուտ իդեաներով են տոգորված։ Առաջիկայում ավելի արագ կզարգանան բարոյական, հոգեբանական, էսթետիկական հարաբերություններն ամուսինների և զավակների միջև։

Սովետական հասարակությունը համառ պայքար է մղում հանուն այն բանի, որպեսզի ոչ մի նշանախեց չմնա տղամարդու երբեմնի բացառիկ իրավունքներից և արտոնություններից։ Եվ եթե երբեմն դեռ լինում են այնպիսիները, որոնք դավանում են՝ «Սխալերը օրական, մարդը ճավիտենական» նշանաբանը, հասարակությունն այդպիսիներին իրենց տեղն է ցույց տալիս։

Անվիճելի է, որ տնարարության և մանուկների հոգսերը ամուսինները պետք է քաշեն հավասարապես։ Կինը չպետք է տանը սպասուհի լինի, իսկ ամուսնուն հավասար՝ միայն դրսում։ Կինը չպետք է հանդուրժի ամուսնուց ծաղկեփնջեր և ճոխ նվերներ (այս կամ այն առիթով), բայց աչք փակի նրա արտաամուսնական կապերի հանդեպ, որովհետև սովետական ընտանիքին խորթ է ամուսինների փոխադարձ կրկնվող «չարաճճիությունների» ներման ոգին։ Վեր է կասկածից, որ իսկական սերը կարող է լինել միայն երկուսով, բայց ոչ երեքով, ինչպես դա կարդում ենք վեպերում։ Առհասարակ, պետք է ասել, որ սովետական ընտանիքի ամրության գրավականը՝ նրա ձևի ու բովանդակության ներդաշնակությունն է, խոստումների ու գործնականի միաձուլումը։ Սխալված չենք լինի, եթե ասենք, որ ընտանիքում միայն կենակցությունը խախուտ հիմք է ամուսնության հարատևության համար։ Միաժամանակ և կողմերից մեկի գերազանցության զգացումը խարխլում է ընտանիքը. մինչ գաղափարական և բարոյական միասնությունը բարձրացնում է այն։ Չմոռանանք, որ ընտանիքի մեծագույն ոսոխն էգոիզմն է, նրա ծաղկման ուղին՝ կողմերի փոխադարձ հարգանքը և երկուսի ազնիվ վաստակը։

Ինչպես փոթորիկը վնասում է պտղատու ծառերին, այնպես էլ կոպտությունն է մաշում հոգիների կապը։ Մի այլ հանգամանք ևս վնասում է ընտանիքին, այն, որ խանդի հարուցած նվաստացման զգացումը հաճախ անբուժելի վերքեր է պատճառում նրա օրգանիզմին։

Որքա՜ն իրավացի էր Թ. Դրայզերը, երբ ասում էր. միայն ուժգին սերը կարող է հարթել այն մանր թյուրիմացությունները, որոնք ծագում են համատեղ կյանքում։

Մանրուքնե՜ր, մանրուքնե՜ր, որքա՜ն մեծ է ձեր դերն այն ընտանիքում, որտեղ սերն առերես է կամ խպառ մարել է։ Դրանք չե՞ն, որ խանդի նոպաների պահերին խանդողի աչքում ահռելի չափեր են ընդունում, որոնցից դիվահար նա կարող է ընթանալ Շեքսպիրյան մավրի ճանապարհով։

Սովետական ընտանիքի զարգացման բնորոշ գծերից մեկը՝ իրավական նորմերի աստիճանական թուլացումը և բարոյական նորմերի արմատավորումն է։ Արդեն այժմ շատ կոլեկտիվների աջակցությամբ ընտանեկան կոնֆլիկտները հաճախ ավելի ճիշտ են լուծվում, քան դատարաններում։

Ի դեպ, եկել է ժամանակը, որպեսզի ապահարզանների իրավունքը տրվի Զագսերին և վերացվեն այդ նպատակով արվող ծախսերն ու հայտարարությունները։ Զագսերի կահավորումը և պատշաճ սպասարկումը օրվա պահանջ է։ Մեր կարծիքով, միայն այն ամուսինները պետք է դիմեն դատարանին ապահարզանի դեպքում, երբ նրանց միջև զավակների խնամելու մասին կամ գույքային վեճ կա։

Թե որքան կարևոր է ընտանիքի հարցը մեզ համար, դա ցայտունորեն երևում է նրանից, որ ՍՄԿՊ Ծրագրում խորապես մշակված են նրա բարգավաճման բոլոր պայմանները։ Նոր մարդու ստեղծման և ընտանիքի զարգացման հարցերը մնում են պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում։

Եվ բնական է, որ այդ հարցերն այսօր լայն քննարկվում են մեր մամուլի էջերում, մարմնանում արվեստի բազմաթիվ գործերում։ Պատահական չէ, որ սիրո ու ընտանիքի հարցերին նվիրված հավաքներն ընթանում են բուռն ու բազմամարդ։ Որովհետև դա հուզում է բոլորին, որովհետև դա մեր հանապազօրյա հարցն է, որը լուծվում է միլիոնավոր մարդկանց պրակտիկայով։

Ընտանիքի և ամուսնության հարցերը բարդ են ու բազմազան, որոնց լուծման համար թե՛ լուրջ իմացություն և թե մտքի խիզախում է պետք։ Դրա համար էլ մենք կարծում ենք, ճիշտ էր Չարենցը, երբ գրում էր.

Չի կարող լինել մեր ոգին գերի
Սերտած խոսքերի, կոտած մտքերի։

---

# ՉԿԱՇԿԱՆԴԵՆՔ ՈՒՍՈՒՑՉԻՆ

Ս. ԽՈՒԴՈՅԱՆ

Մանկավարժական գիտությունների թեկնածու

Դպրոցի առջև ծառացած մանկավարժական պրոբլեմներից կարևորագույնն են ուսման որակի բարձրացման հետ կապված հարցերը։ Ներկայումս որոնումներ են կատարվում ուսուցման պրոցեսի վերակառուցման և կատարելագործման, դասավանդման մեթոդների ակտիվացման, սովորողների ինքնուրույնության զարգացման ուղղությամբ։ Ամբողջ երկրում հայտնի է Լիպեցկի մարզի և Լիպեցկ քաղաքի ուսուցիչների փորձը, որը լայնորեն լուսաբանվում է մանկավարժական մամուլում։ Լիպեցկի ուսուցիչներին հաջողվել է հիմնովին փոխել դասի պրոցեսը, նրա կազմակերպման շաբլոն և քիչ արդյունավետ ձևերը, աշակերտների գիտելիքների ստուգման ու գնահատման սիստեմը և այլն։

Ուսման որակի բարձրացման ուղղությամբ նման որոնումներ կատարվում են նաև մեզ մոտ։ Սակայն, ցավոք սրտի, այդ ասպարեզում մենք դեռևս մեծ հաջողություններ չունենք։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր ուսուցիչներից շատերը կիրառում են ուսուցման պրոցեսի կազմակերպման միապաղաղ, միատիպ ու քարացած ձևեր, դասավանդման պասսիվ մեթոդներ։

Այդպիսի ուսուցիչները լավ չեն կազմակերպում նաև դաստիարակչական աշխատանքը, որը նույնպես բարելավման լուրջ կարիք ունի։ Երկար ժամանակ դաստիարակության մեջ իշխում էին վերացական, այսպես կոչված՝ բարոյախոսական-խրատական մեթոդները, որոնք քիչ արդյունք էին տալիս։ Մինչդեռ վաղուց հայտնի է, որ դաստիարակությունը որքան գործնական է, այնքան ավելի հզոր է ու ներգործուն։ Սովետական ականավոր մանկավարժ Ա. Մակարենկոյի դաստիարակչական սիստեմի ողջ հաջողությունը հենց նրանում էր, որ նա իր սաներին դաստիարակում էր ոչ թե մեղրածոր խոսքերով, սենտիմենտալ խրատներով ու հորդորներով կամ դեսպոտական միջոցներով, այլ կոնկրետ հանձնարարություններով, աշխատանքային գործունեությամբ, մանկական կոլեկտիվի ուժերով և այլն։

Փոխվել ու փոխվում են սովորողների դաստիարակության պայմանները, ուստի և պետք է փոխվեն գործադրվող մեթոդներն ու ձևերը։ Կյանքի հետ դպրոցի մերձեցումը, աշխատանքային ու արտադրական ուսուցումը, բանվորների ու կոլտնտեսականների հետ աշակերտների գործնական շփումը, ինքնասպասարկման ձևերի լայն կիրառումը և այլն ամուր ու հաստատուն հիմք են

Տպագրելով սույն հոդվածը, հրավիրում ենք մեր ընթերցողներին արտահայտվելու շոշափված կարևոր հարցերի շուրջ։—Խմբ.։



պատանիների ու աղջիկների ակտիվ դաստիարակության համար։ Անտարակույս, մեծ նշանակություն ունեն նաև աշակերտներին ժամանակին ու տեղին արված ուսուցչի դիտողությունները, ուղղություն տվող նրա հեղինակավոր խոսքը, մտածված ու սեփական օրինակով ամրապնդված պահանջները և այլն։ Բայց, ինչպես ասացինք, շատ ուսուցիչներ ոչ միայն անբավարար են օգտագործում դաստիարակության վերոհիշյալ հնարավորությունները, այլև շարունակում են կառչել հին, զուտ խոսքային — բարոյախոսական մեթոդներից։

Դեռևս դանդաղ է ընթանում վերակառուցումը ուսուցման և դաստիարակության ուղղությամբ։ Տասնամյակների ընթացքում արմատավորված և տրադիցիա դարձած սովորությունները, ուսուցման ու դաստիարակության հին ձևերը դժվարությամբ են իրենց տեղը զիջում նորին, առաջավորին։

Նման պահպանողականությունը, անշուշտ, իր պատճառներն ունի։ Հնարավորություն չունենալով այստեղ մանրամասն կանգ առնելու դրանց վրա, կցանկանայինք միայն նշել, որ եղած պատճառներից առաջնայինը անհատի պաշտամունքի ժամանակներից եկող դոգմատիզմը, ուսուցչի ստեղծագործական հնարավորությունները կաշկանդող վարչական ու մանկավարժական բազմապիսի սահմանափակումներն ու ավելորդ կանոնարկումներն են, վերահսկողության ֆունկցիայի միակողմանի, ուստի և սխալ ըմբռնումն ու կիրառումը։

«Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի հայտնի թեզիսներում ասված է, որ «Թույլ է տրվում ուսուցիչների և մանկավարժական կոլեկտիվների աշխատանքի ավելորդ կանոնարկում ուսումնադաստիարակչական աշխատանքի ձևերի և մեթոդների ընտրության ասպարեզում»։

Ահա թե ինչու դպրոցի վերակառուցման գործը մինչև վերջ հասցնելու, սովորողների հետ տարվող ուսումնադաստիարակչական աշխատանքները կյանքի պահանջներին համեմատ կազմակերպելու և վերևում թվարկված մանկավարժական պրոբլեմները հաջող լուծելու համար անհրաժեշտ է չկաշկանդել ուսուցչին, վերացնել նրա աշխատանքի ձևերի ու մեթոդների ավելորդ կանոնարկումները, ուսուցիչներին և մանկավարժական կոլեկտիվներին հնարավորություն տալ սեփական նախաձեռնություն հանդես բերելու և առանց մտավախության ձեռնամուխ լինելու տվյալ դասարանի կամ դպրոցի առջև կանգնած կոնկրետ խնդիրների լուծմանը։

Միայն այս ճանապարհով հնարավոր կլինի ոչ միայն հաղթահարել պահպանողականությունը, այլև բարձրացնել ուսուցիչների դերն ու պատասխանատվությունը ուսումնադաստիարակչական աշխատանքում, զարգացնել նրանց ինքնուրույնությունն ու ակտիվությունը, մինչև վերջ կենսագործել ժողովրդական ուսուցչի մասին լենինյան հայտնի պատգամները։

Վերջին տարիներս որոշ գործ արվում է այս ուղղությամբ։ Ուսուցիչներն սկսել են համեմատաբար ավելի ակտիվ քննարկել ուսումնադաստիարակչական աշխատանքի կազմակերպման հարցերը, առանձին ուսուցիչներ մանկավարժական-մեթոդական որոնումներ են կատարում և աշխատում են գտնել ուսուցման պրոցեսի բարելավման, դասավանդման մեթոդների ակտիվացման, աշակերտների ինքնուրույնության զարգացման զանազան միջոցներ։

Սակայն այս ամենը դեռևս շատ հեռու է բավարար լինելուց և չի կարող

դպրոցի առջև դրված մեծ խնդիրների հաջող իրականացման երաշխիք հանդիսանալ։ Անհրաժեշտ է, որ Լուսավորության մինիստրությունը և ժողովրդական կրթության բոլոր հիմնարկները այս հարցում ավելի վճռական քայլերի դիմեն, համարձակորեն վերացնեն ուսուցչի ստեղծագործական աշխատանքի ճանապարհին եղած բազմաթիվ ու բազմապիսի արգելքները։

Մեր միտքը պարզաբանելու համար դիմենք կոնկրետ օրինակների։

Ամեն տարի Լուսավորության մինիստրությունը տեղերն է ուղարկում բազմաթիվ որոշումներ, հրահանգներ ու հրամաններ, որոնց նպատակը, անկասկած, բարի է, քանի որ դրանք հետապնդում են ուսումնադաստիարակչական աշխատանքների բարելավում։ Լույս են տեսնում նաև մանկավարժականմեթոդական աշխատություններ և ձեռնարկներ, որոնք նույնպես անհրաժեշտ են։ Սակայն ամենքին էլ հայտնի է, որ ո՛չ հրամաններն ու հրահանգները, ո՛չ էլ մանկավարժական-մեթոդական աշխատությունները, որքան էլ դրանք լավ ու խելացի գրված լինեն, չեն կարող համընդհանուր դեղատոմս լինել մանկավարժական բոլոր ցավերի, դպրոցին հուզող բոլոր հարցերի համար։ Դրանք չեն կարող լիովին հաշվի առնել այն կոնկրետ իրադրությունն ու պայմանները, որոնցում պետք է կիրառվեն, այն հարցերը, որոնք կարող են առաջանալ դրանց գործադրման ընթացքում, վերջապես՝ ամեն մի դպրոցի, դասարանի և նույնիսկ ուսուցչի հնարավորություններն ու առանձնահատկությունները։

Մի խոսքով, մանկավարժական բարդ ու բազմաբեղուն կյանքը չի կարող ամփոփվել ու լուծում ստանալ պաշտոնական փաստաթղթերի ու մեթոդական ձեռնարկների նեղ շրջանակներում։ Հետևաբար, հրամաններն ու հրահանգները, մեթոդական ձեռնարկներն անհրաժեշտ ուղղություն տալով ուսուցիչներին և դպրոցական մյուս աշխատողներին, պետք է միաժամանակ նրանց հիշեցնեն, որ դրանց կիրառման պրոցեսում հարկավոր է չմոռանալ տվյալ վայրի, դպրոցի և ուսուցչի պայմաններն ու հնարավորությունները, այլապես կստացվի հրամանների ու հրահանգների դոգմատիկ ընկալում և կիրառում, ինչպես հաճախ պատահում է։

Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստրի հրամաններից մեկում պահանջվում է, որպեսզի ուսուցիչները բարձրանան իրենց դասարանի հետ, իսկ տարրական դասարանների ուսուցիչները նրանցում ավանդվող բոլոր հիմնական առարկաները վարեն առաջինից չորրորդ դասարանը ներառյալ։

Մանկավարժական շատ նկատառումներով այս պահանջը խելացի է ու անհրաժեշտ։ Նրա նպատակն է նպաստել ուսուցչի աճին, բարձրացնել նրա պատասխանատվությունը և բարելավել ուսման որակը։ Եվ, իսկապես, ինչի՞ է նման, երբ մի ուսուցիչ տվյալ դասարանի հետ պարապում է ընդամենը մեկ տարի, այնուհետև այն հանձնում է երկրորդին, սա էլ երրորդին, չորրորդին, և նրանցից ոչ մեկը իրեն պատասխանատու չի համարում տվյալ դասարանի աշակերտների գիտելիքների համար. ամեն մեկը մեղքը գցում է իր նախորդի վրա և իրեն հանգիստ է զգում։ Կրկնում ենք, որ սա խելացի միջոցառում է։ Սակայն ցավն այն է, որ տեղերում երբեմն դոգմատիկորեն ընդունելով մինիստրի հրամանը, մեխանիկորեն բոլոր ուսուցիչներին ստիպում են բարձրանալ իրենց դասարանների հետ։ Արարատյան դաշտավայրի դպրոցների դիրեկտորների խորհրդակցությունում բերվեց այսպիսի օրինակ. դպրոցներից մեկում, ձգտելով ինչ գնով էլ լինի կենսագործել մինիստրի հրամանը, մի ուսուց-



չուհու «բարձրացրել» են իր դասարանի հետ։ Սակայն հետո պարզվել է, որ այդ ուսուցչուհին չի կարողանում ինքնուրույն լուծել IV դասարանի թվաբանական խնդիրները և երբեմն աշակերտներն իրենք են նրան ցույց տալիս լուծման ձևը, իհարկե, նախապես հասկացնելով, որ նա թվաբանություն չգիտի։ Դե՛, ինչպե՞ս կարող է այդպիսի ուսուցչուհին ստեղծագործաբար աշխատել, ակտիվացնել ուսուցման պրոցեսը, երբ ինքը բավարար գիտելիքներ չունի։ Կարիք կա՞ր այդ ուսուցչուհուն «բարձրացնել» իր դասարանի հետ և, մի կողմից, հեղինակազրկել նրան ու դարձնել աշակերտների ծաղրի առարկան, իսկ մյուս կողմից հարվածել ուսման գործին։ Կամ՝ վերջերս պարզվեց, որ Շահումյանի շրջանի Նորագավթի միջնակարգ դպրոցում չորրորդ դասարանների հայոց լեզվի երկու դասատուներն էլ տվյալ առարկայի մասնագետներ չեն և հարկադրաբար են ստանձնել հայոց լեզվի դասավանդումը։

Ահա թե ինչի կարող է հասցնել դոգմատիզմը և ինչպես կարող են նույնիսկ լավ հրամանները երբեմն նաև հակառակ արդյունքը տալ, երբ դրանք մեխանիկորեն են ըմբռնվում ու կիրառվում։

Ուսումնական ծրագրերը, ինչպես հայտնի է, կազմվում են բոլոր դպրոցների համար, բայց դրանց կազմողները, հասկանալի պատճառներով, չեն կարող հաշվի առնել և ծրագրում արտացոլել ամեն մի դպրոցի, նրա գտնված վայրի կոնկրետ պայմաններն ու առանձնահատկությունները, յուրաքանչյուր ուսուցչի կարողություններն ու հնարավորությունները, տվյալ դպրոցում համապատասխան առարկայի ուսուցման վիճակը և այլն։ Մինչդեռ այդ բոլորը հաշվի առնելը շատ կարևոր է, քանի որ մենք ուզում ենք ուսուցումը կապել կյանքի հետ և հաղթահարել այդ ասպարեզում եղած վերացականությունը։ Իսկ ո՞վ պետք է այդ անի։ Միայն ու միայն տվյալ դպրոցի ուսուցիչները, որոնց, սակայն, այդպիսի իրավունք չի տրված։

Մի քանի օրինակներով պարզենք մեր միտքը։

Բուսաբանության և կենդանաբանության ծրագրերը կազմվում են Մոսկվայում, վերանայվում ու տեղայնացվում են մեզ մոտ։ Նույնիսկ այդ դեպքում էլ հնարավոր չի հաշվի առնել մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր շրջանի ու գյուղի բուսական ու կենդանական աշխարհի առանձնահատկությունները։ Միտք ունի՞, ասենք, բամբակի և խաղողի ուսումնասիրմանը Ստեփանավանի շրջանի դպրոցներում, և, հակառակը՝ անասնապահության, հացաբույսերի ու կարտոֆիլի ուսումնասիրմանը Արարատյան դաշտավայրի դպրոցներում հատկացնել նույնքան ժամ, որքան նախալեռնային ու լեռնային մյուս շրջանների դպրոցներում։ Մեր կարծիքով, ո՛չ։

Ուսուցիչը պետք է իրավունք ստանա իր շրջանի ու դպրոցի պայմանների համեմատ փոփոխություններ մտցնել այդ առարկաների ծրագրերում, իհարկե, չխախտելով գիտելիքների ուսուցման գիտական համակարգը։

Նույնը կարելի է ասել նաև քիմիայի, մասամբ աշխարհագրության և մյուս առարկաների մասին։ Ինչո՞ւ, օրինակի համար, հայոց լեզվի և գրականության դասատուն հնարավորություն չպետք է ունենա այս կամ այն թեմային կամ հեղինակին հատկացված ժամերը փոփոխել ու վերադասավորել՝ ելնելով անհրաժեշտությունից, այսինքն՝ իր մոտ այդ առարկաների ուսուցման կոնկրետ վիճակից ու պահանջներից, իր տարիների փորձից և այլն։

Ծրագիր կազմողները նույնպես մարդիկ են, նրանք էլ կարող են սխալվել։ Ինչո՞ւ, ուրեմն, թույլ չտալ, որպեսզի կյանքը, գործի շահերից ելնելով,

իր ուղղումները մտցնի ուսումնական ծրագրերում, մեղմ ասած, լրացնի նրանց թերին, շտկի սխալները...

Դժբախտաբար, այսպես չեն մտածում դոգմատիզմին գերի մնացած որոշ ընկերներ։ Հենց վերջերս գիտական աշխատողներից մեկը սուր վեճի էր բռնվել մի խումբ ուսուցիչների հետ, որոնք համարձակվել էին քննադատել հայոց լեզվի ծրագիրը։ Այդ գիտական աշխատողը հայտարարել է, որ «ծրագիրը պետական փաստաթուղթ է, և ուսուցիչները պարտավոր են անշեղորեն ղեկավարվել նրանով»։ Նման դոգմատիկ հարցադրումը թևաթափ է անում ուսուցչին, պասսիվացնում է նրան և զրկում ինքնուրույնությունից, պարարտ հող ստեղծելով վերացական ու կյանքից կտրված ուսուցման համար։

Կամ վերցնենք ծրագրի կատարման հարցը։ Վերադաս օրգանները ուսուցչից պահանջում են ինչ գնով էլ լինի կատարել ուսումնական ծրագիրը և թերակատարման դեպքում սկսում են «մշակել» նրան։ Ծրագրի կատարման պահանջը ընդհանրապես, իհարկե, ճիշտ է, ուսուցիչը պետք է ձգտի ուսումնական տարվա հենց սկզբից այնպես կազմակերպել գործը, որ հնարավորություն ունենա նորմալ կերպով անցնել և աշակերտներին յուրացնել տալ ծրագրով նախատեսված բոլոր թեմաները։ Բայց եթե, այնուամենայնիվ, այնպիսի պայմաններ են ստեղծվել, որ ուսուցիչը չի կարողացել այդ պահանջը լրիվ կատարել, ինչպե՞ս վարվել նման դեպքերում։ Ստիպել ուսուցչին, որ նա անպայման անցնի բոլոր թեմաները, բայց ինչպե՞ս, ի հաշիվ որակի՞։ Չէ՞ որ, առանց դրա էլ, ծրագրերի ծանրաբեռնվածության պատճառով հաճախ թեմաներն անցնում են մակերեսային ու հապճեպ։ Ավելի ճիշտ չի՞ լինի, եթե, հարգելի պատճառների առկայության դեպքում, ուսուցչին խորհուրդ տրվի հիմնովին անցնել ու յուրացնել տալ ծրագրային հիմնական նյութը, բաց թողնելով չանցած 1—2 թեման, այն հաշվով, որպեսզի հաջորդ ուսումնական տարում նա կամ նրան փոխարինող ուսուցիչը չմոռանան անհրաժեշտ ժամանակ հատկացնել նախորդ տարում չուսումնասիրված թեմաներին։ Մի խոսքով, շեշտը ինչի՞ վրա պետք է դնել՝ ծրագրի որակակա՞ն, թե՞ ձևական կատարման վրա։ Ի՞նչ օգուտ ձևական կատարումից, եթե աշակերտներն անցած նյութը չյուրացրած կամ ցածր գիտելիքներով պետք է փոխադրվեն հաջորդ դասարան։ Դա չէ՞ արդյոք ուսման մեջ ետ մնալու և երկտարեցիության գլխավոր պատճառներից մեկը։

Իսկ եթե ծրագրի թերակատարումը կամ ցածրորակ անցնումը կապված է ուսուցչի անբավարար պատրաստության և անբարեխղճության հետ, այդ դեպքում կարող է միայն մեկ ելք լինել՝ ազատվել նման ուսուցչից։

Ավարտական և հասունության ատեստատի քննությունների ժամանակ հաճախ կարելի է հանդիպել այսպիսի զավեշտական դեպքերի։ Քննությունն ավարտված է, գրավոր աշխատանքները ստուգվում են հանձնաժողովի կողմից։ Պարզվում է, որ աշակերտ Գ-ն կատարել է այսքան ուղղագրական և այսքան կետադրական սխալ. ինչպե՞ս գնահատել նրա գրավորը։ Այդ հարցը հանձնաժողովը ինքնուրույն լուծել չի կարող, պետք է նայել, թե ինչպես է «սահմանված» գնահատման նորմաներում։ Պարզվում է, որ այդ աշակերտը, ասենք թե, մեկ կետադրական և մեկ ուղղագրական սխալ ավելի է կատարել, քան այն մաքսիմումը, որ «3» ստանալու իրավունք է տալիս։ Գնահատման նորմաներից շեղում կատարել չի կարելի (չէ՞ որ հանկարծ ժողկրթբաժնի տեսուչը, մեթոդիստը կամ վերևից որևէ մեկը կգա «կհայտնաբերի» այդ), ուստի



և աշակերտի գրավորը գնահատվում է «2», չնայած ուսուցչուհին համառորեն պնդում է, որ այդ աշակերտը լավ սովորող է, նրա սխալները պատահական բնույթ են կրում և այլն։ Ո՛չ, նրան լսող չկա, թեև հանձնաժողովի անդամներից շատերն էլ համաձայն են նրա հետ, բայց շեղվել «նորմաներից»՝ չեն կարող։

Մի՞թե այս պրակտիկան ճիշտ է, մի՞թե հնարավոր է գիտելիքները արշինով չափել և մկրատով կտրել. էլ ո՞ւր մնաց ուսուցման բուն պրոցեսը. ո՞ւր մնաց ուսուցիչը, որ տարիներ շարունակ աշխատել է աշակերտների տվյալ կազմի հետ և լավ գիտե նրանցից յուրաքանչյուրի ուժեղ ու թույլ կողմերը։ Ո՞ւմ է հարկավոր այդ ձևամոլությունը, որն այնքան տարածված է դպրոցական կյանքում։

Այդպիսով արդյոք չե՞նք դիմազրկում ուսուցչին, չե՞նք թուլացնում նրա պատասխանատվությունն իր աշխատանքի նկատմամբ, չե՞նք վնասում ուսման ողջ գործին։

Հարց է առաջանում, եթե այդպես է, ապա ավելորդ չե՞ն գնահատման նորմաները և ժամանակը չէ՞ դրանցից հրաժարվելու։ Մեր կարծիքով, ո՛չ։ Դրանք առայժմ անհրաժեշտ են։ Բայց ինչպես ամեն մի մանկավարժական-մեթոդական աշխատություն, այնպես էլ գնահատման նորմաները պետք է խորհրդատուի դեր կատարեն, կողմնորոշեն ուսուցչին, չլինեն պարտադիր, չվերածվեն դոգմայի։

Ուսուցիչն ավելի լավ գիտե իր աշակերտներին, իր գործը, ուրեմն թող նա էլ լիակատար պատասխանատվություն կրի դրա համար։ Աշակերտների գիտելիքների գնահատման հարցում, թեկուզև քննությունների ժամանակ, ուսուցչի ձայնը պետք է վճռական լինի։ Ոչ մի պատահական ստուգում չի կարող մեզ տալ ուսումնական աշխատանքի կամ աշակերտների առաջադիմության իրական պատկերը։

Նման ստուգումների ժամանակ անխուսափելի չեն հնարավոր թյուրիմացություններն ու սխալները։ Եվ դրանք շատ ավելի քիչ կլինեն, եթե ուսուցչին դարձնենք գործի իսկական տերը և ոչ թե խոսքով իրավունքներ տանք, իսկ իրականում շղթայենք նրան։

Երկու խոսք վերահսկողության մասին։ Վերահսկողությունը, ինչ խոսք, շատ հարկավոր է տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Դեռևս իր ժամանակին մեծ Լենինն ընդգծել է վերահսկողության անհրաժեշտությունն ու կարևոր դերը։ Այն անհրաժեշտ է նաև դպրոցական բնագավառում։ Սակայն, ինչպիսի՞ն պետք է լինի ուսուցչի կամ դպրոցական աշխատանքների վերահսկողությունը և ճի՞շտ է արդյոք այն իրականացվում։

Վերահսկողությունը շատ բարդ և բազմակողմանի պրոցես է։ Դպրոցում այն կարող է իրականացվել բազմաթիվ ձևերով, բայց նրա նպատակը պետք է մեկը լինի՝ արմատապես բարելավել ուսումնադաստիարակչական աշխատանքը։ Այն վերահսկողությունը կամ ստուգումը, որը չի ձգտում կամ չի հանգում դրան, ավելորդ է։

Վերահսկողությունը երկու կողմ ունի՝ ստուգել և օգնել։ Սակայն իրականում այն հաճախ հանդես է գալիս միակողմանի, առկա է ստուգումը, բայց չկա օգնությունը։ Այդպիսի վերահսկողությունը դառնում է ձևական ու ինքնանպատակ։ Ասենք թե դպրոցի դիրեկտորը և ուսմասվարը, իրականացնելով

վերահսկողության ֆունկցիան, գոյություն ունեցող հրահանգների համաձայն ամեն օր առնվազն երկու դաս են լսում, դիտողությունները բարեխղճորեն գրանցում ընդհանուր տետրերում՝ վերևից եկող վերահսկողներին ցույց տալու համար։ Սակայն անցնում են շաբաթներ ու ամիսներ և պարզվում է, որ ոչ ուսման որակն է բարելավվել, ոչ էլ բարձրացել է աշակերտների առաջադիմությունը, իսկ նրանց նկատած թերությունները հարատևում են։ Ի՞նչ արժեք ունի նման վերահսկողությունը և պե՞տք է արդյոք այն շարունակվի այդ եղանակով։ Ավելի լավ չի՞ լինի, որ դիրեկտորը և ուսմասվարը համեմատաբար քիչ դասեր լսեն (ամեն օր երկուական դաս լսելը այնքան էլ հեշտ չէ, մանավանդ, երբ այն կապված է պարտադիր գրառումների հետ), բայց գործնական օգնություն ցույց տան ուսուցչին, ինչպես հարկն է զբաղվեն նկատված թերությունների վերացմամբ և որոշակի արդյունքի հասնեն։

Վերևից իրականացվող վերահսկողությունը նույնպես, շատ դեպքերում, միակողմանի է լինում։ Հաճախ այս կամ այն դպրոցը ստուգում են, այս կամ այն ուսուցչի աշխատանքը «ուսումնասիրում», որպեսզի փաստեր մատակարարեն զեկուցողների համար։ Այդպես են վարվում նաև ժողկրթբաժնի խորհրդում ու լուսավորության մինիստրության կոլեգիայում լսվելիք այս կամ այն հարցը նախապատրաստելու ժամանակ։ Ու շատ անգամ «ստուգված» ուսուցիչները չեն էլ իմանում, թե այդ խորհրդում կամ կոլեգիայում ի՞նչ խոսեցին իրենց մասին, կամ ի՞նչ պետք է անեն իրենք այդուհետև։

Հանդիպում ենք նաև կուրյոզային փաստերի սիրահարների։ Նրանք ուսուցչի մոտ դասեր են լսում, որպեսզի «բռնեն» նրա սխալները և այնուհետև հիպերբոլիկ ձևով ամեն տեղ պատմեն դրանց մասին, աջ ու ձախ հոլովեն այդ ուսուցչի անունը։ Հենց այդպիսիներն են, որ մեռցնում են ուսուցչի վստահությունն իր ուժերի նկատմամբ, նրան դարձնում են երկչոտ, անհամարձակ։ Նա ինքն սկսում է կասկածել իր ամեն մի քայլի վրա և դժվարանում է որոշել, թե ինչպես վարվի, որպեսզի նման «վերահսկողների» պարսավանքին ու ծաղրին չենթարկվի։ Այստեղ արդեն ավելորդ է խոսել ուսուցչի ինքնուրույնության և ստեղծագործական աշխատանքի մասին։

Դպրոցական տեսուչները և մեթոդիստները հաճախ են լինում դպրոցներում, ֆրոնտալ և ոչ ֆրոնտալ ուսումնասիրություններ կատարում, դասեր լսում և այլն։ Բայց հաճախ կարելի է նկատել, որ շատ ուսուցիչներ անբարյացակամությամբ են ընդունում նրանց։ Թերևս նրանք այդ պահին մտածում են, թե ով է դառնալու տվյալ այցելության հերթական «զոհը»։

Տեսուչը ուսուցիչների ուսուցիչը պետք է լինի։ Մենք ունենք այդպիսի տեսուչներ։ Բայց, ցավոք սրտի, ոչ բոլորն են այդպիսին։ «Ուսուցիչների ուսուցիչը» դպրոց է գնում ոչ միայն և ոչ այնքան թերություններ հայտաբերելու, որքան ուսուցիչներին օգնելու, նրանց հետ անկեղծ զրուցելու, նրանց մոտ եղած լավն ու դրականը տեսնելու և խրախուսելու, դրանք զարգացնելու և ամրապնդելու, առաջավոր ուսուցիչների փորձը նրանց հաղորդելու և, վերջապես, նկատված սխալները բարեկամաբար շտկելու համար։ Այդպիսի տեսուչին, մեթոդիստին կամ գիտական աշխատողին ուսուցիչները գրկաբաց են ընդունում և երբեք չեն խուսափում նրանից։ Նրանք գիտեն, որ իրենց մոտ լավ բարեկամ ու խորհրդատու է եկել և ամեն մեկը ձգտում է, որ նա իր մոտ անպայման դասեր լսի։

Բայց, ինչպես ասացինք, կան նաև այլ կարգի տեսուչներ, մեթոդիստներ



ու գիտական աշխատողներ։ Դրանք իրենց կոչումից ցածր կանգնած մարդիկ են, որոնք, սակայն, վերևից են նայում ուսուցչին, հաճախ կոպտում ու վիրավորում են նրա արժանապատվությունը։ Վերահսկողությունը նրանք հասկանում են ո՛չ այլ կերպ, քան մերկ վարչարարություն։ Հրամայված է այսպես, ուրեմն վերջացավ, ուրիշ ոչ մի կերպ լինել չի կարող — ահա դրանց քրեդոն։ Անուղղելի դոգմատիկներ են դրանք, որոնց համար հրամաններից դուրս ճշմարտություն չկա։

Հիշում եմ այսպիսի մի դեպք։ Գիշերօթիկ դպրոցներից մեկում զրույցի բռնվեցինք ուսումնական աշխատանքների և սովորողների տնային հանձնարարությունների կազմակերպման հարցերի շուրջ։ Զրույցին ներկա էր նաև մի տեսուչ։ Դպրոցի ընկերներին ես ասացի, որ այդ հարցում հետաքրքրական փորձ ունի Ռուսաստանյան Ֆեդերացիայի դպրոցներից մեկը, համառոտակի պատմեցի այդ մասին և խորհուրդ տվեցի փորձի կարգով կիրառել այն, գուցե իրենց մոտ էլ լավ արդյունք կտա։

Տեսուչը առարկություն չընդունող և խիստ հատու տոնով բացականչեց.

— Իսկ ես թույլ չեմ տա նրանց այդպես վարվել. ինչպես որ սահմանված է վերևից, այնպես էլ պետք է լինի։

Այսպիսի կոպիտ ուժի առաջ հաճախ տեղի են տալիս ոչ միայն ուսուցիչները, այլև մանկավարժությունը։

Կիրովականի № 16 գիշերօթիկ դպրոցի ուսմասվարը մեզ հետ զրուցելիս հայտնեց, որ ինքն իր առարկայից ետ մնացող մի քանի աշակերտների գաղտնի փոխադրել է հաջորդ դասարան և որոշել է ինչ գնով էլ լինի նրանց հասցնել իրենց ընկերներին։ Հարց է առաջանում, թե ինչո՞ւ այդ եռանդուն և իր գործը սիրող ուսուցչուհին հարկադրված է եղել «գաղտնի» դիմելու այդ քայլին, որը միայն շնորհակալության և խրախուսանքի է արժանի։ Նա վախեցել է օրենքի տառակեր դոգմատիկներից, որոնք կարող են նրան պատասխանատվության ենթարկել։ Տվյալ դեպքում ուսուցչուհու «գաղտնի» կատարած քայլը ոչ մի առնչություն չունի առանձին ուսուցիչների մոտ նկատվող լիբերալիզմի ու աչքակապության երևույթների հետ, երևույթներ, որոնք ամենախիստ դատապարտման են արժանի։ Վերջիններս այդ մեթոդին են դիմում իրենց անբարեխղճությունն ու անբավարար պատրաստականությունը կոծկելու և էժան հեղինակություն ձեռք բերելու համար։ Բայց մեր հիշած ուսուցչուհին բոլորովին այլ նպատակ է հետապնդում։ Նա միանգամայն մտածված ու բարձր գիտակցականությամբ է դիմում այդ քայլին, չխնայելով իր ժամանակը, ուժերն ու գիտելիքները՝ թույլ աշակերտների ետ մնալը գործնական ճանապարհով կանխելու համար։

Ուրեմն պետք է տարբերել ստեղծագործաբար ու պատասխանատվության բարձր զգացումով աշխատող ուսուցիչներին, անպատասխանատու ու անբարեխիղճ մարդկանցից։

Մի օրինակ ևս։ Վերջերս, Լուսավորության մինիստրությունում ուսուցչական օգոստոսյան խորհրդակցությունների արդյունքներն ամփոփելիս մի ընկեր հայտարարեց, որ իրեն ամրացված շրջանի ուսուցիչները քննադատում էին մինիստրության այսինչ հրահանգը, ու «թեև նրանք իրավացի էին, այնուամենայնիվ ես նրանց ստիպեցի, որ անշեղորեն կատարեն այն»։ Եթե իրոք ուսուցիչները ճիշտ էին, ինչո՞ւ պետք է ստիպել, որ նրանք կուրորեն կատարեն հրահանգը։ Որտեղի՞ց է գալիս հրամանների ու հրահանգների նկատ-

մամբ այս կույր պաշտամունքը, որից ազատագրվել մինչև այժմ էլ չենք կարողանում։

Իր հոդվածներից մեկում «Իզվեստիա» թերթը քննադատելով թղթային—բյուրոկրատական ղեկավարության արատավոր պրակտիկան, որն արտահայտվում է մարդկանց նկատմամբ անվստահության, նրանց անընդհատ բոթելով ու երբեմն էլ նույնիսկ բռնությամբ «առաջ մղելու» մեջ, ընդգծում է, որ մտածված ղեկավարության և իսկական օգնության հետ ոչ մի առնչություն չունեցող այդպիսի մանրախնդիր խնամակալությունը կադրերին զրկում է ինքնուրույն մտածելու կարողությունից և նրանց վարժեցնում է միայն ուրիշի թելադրանքով գործելուն։

Թող ընթերցողը չկարծի, թե մենք հրահանգների ու հրամանների թշնամի ենք։ Բոլորովին ոչ։ Դրանք անհրաժեշտ են և շատ կարևոր, բայց նրանցով չի սկսվում և ավարտվում կյանքը, ուստի և չի կարելի մարդկանց ստիպել, որ իրենց ամեն մի քայլը այդ հրահանգների կանոններով չափեն ու հետո կատարեն։

Վերցնենք ուսումնական ու դաստիարակչական աշխատանքների կազմակերպման, դասավանդման մեթոդների ու ձևերի գործադրման բնագավառը, ուր ուսուցիչը անհամեմատ ավելի ազատ պիտի լինի և հնարավորություն ունենա առավել ինքնուրույնություն հանդես բերելու։

Ամենքին հայտնի է, թե ինչ տխուր հետևանքներ ունեցան 30—40-ական թվականներին ուսումնական աշխատանքի կազմակերպման հարցերում մեկը մյուսին հաջորդող կանոնարկումները։ Դասը ուսումնական աշխատանքի հիմնական ձևից վերածվեց միակ ձևի և «բանտարկվեց» դասասենյակի չորս պատերի ներսում՝ խզում առաջացնելով կյանքի և ուսուցման միջև։ Կոմբինացված դասը, իր բոլոր արատավոր կողմերով հանդերձ, դարձավ միակն ու տիրապետողը, ուսուցիչներին փաստորեն զրկելով ուսումնական աշխատանքի այլ, ավելի ռացիոնալ ձևերի ստեղծագործական որոնումների հնարավորությունից։ Դասավանդման մեջ իշխողը դարձավ խոսքային և կավճային ուսուցումը՝ կտրված կյանքից ու պրակտիկայից։ Ուսուցման ու դաստիարակության շատ մեթոդներ փոխառվեցին անցյալի սխոլաստիկական դպրոցից, իսկ աշակերտները մատնվեցին պասիվության։ Աշխատանքը, որպես կոմունիստական դաստիարակության հզոր գործոն, թերագնահատվեց և դուրս մղվեց դպրոցից։ Ուսումնական ծրագրերի ու դասագրքերի ծանր բեռի տակ մոռացության տրվեցին երեխաների ֆիզիկական, հոգեկան և մտավոր զարգացման հարցերը։

Դպրոցի վերակառուցումը բարենպաստ պայմաններ է ստեղծել այս թերությունների վերացման համար։ Գնալով ավելանում է ստեղծագործաբար մտածող ու գործող ուսուցիչների թիվը։ Սակայն սկսված շարժումն ավելի լայնորեն ծավալելու և մասսայական դարձնելու համար անհրաժեշտ է վերացնել մանկավարժական ու մեթոդական կարգի կաշկանդումները, ավելորդ կանոնարկումները և այլն։ Ուսուցիչը պետք է վայելի լիակատար վստահություն, նրա ամեն մի քայլը չպետք է կանխորոշվի կամ հետապնդվի դպրոցների ղեկավարների և ժողովրդական կրթության օրգանների կողմից։ Անհրաժեշտ է ամեն կերպ խրախուսել և պաշտպանել այն ուսուցիչներին, ովքեր անդուլ որոնումներ են կատարում ուսման պրոցեսը կատարելագործելու, դասավանդման ավելի ակտիվ մեթոդներ ու ձևեր գտնելու, սովորողների ինքնուրույնությունն ու ակտիվությունը զարգացնելու ուղղությամբ։



Հակառակ այս ամենի, կան մանկավարժական գիտության առանձին ներկայացուցիչներ ու մեթոդիստներ, որոնք իրենց աշխատություններում, հոդվածներում ու ելույթներում իրենց կարծիքները ուսուցիչներին հրամցնում են որպես գիտության վերջին խոսք, որպես անառարկելի ճշմարտություն։ Կարդում ես այդ աշխատություններն ու հոդվածները և զարմանում, թե ինչպիսի թեթևությամբ են դրանց հեղինակները «լուծում» մանկավարժական ամենաբարդ պրոբլեմները։ Նրանց խոսակցական լեզվում տիրապետող են «ուսուցիչը պետք է...», «ուսուցիչը պարտավոր է...» արտահայտությունները, որոնք ըստ էության փակում են մանկավարժական որոնումների դռները։

Մի գիտական աշխատող ռեսպուբլիկայի դպրոցներից մեկում վեճի է բռնվում ուսուցիչների հետ՝ աշակերտների գրավոր աշխատանքների ստուգման հարցի շուրջը և պնդում, որ պետք է այն կատարել միայն իր նշած ձևով։ Երբ ուսուցիչները նրան բացատրում ու ցույց են տալիս, որ գոյություն ունեն ստուգման նաև այլ ձևեր, որոնք պակաս արդյունավետ չեն, այդ գիտական աշխատողը, փոխանակ լսելու բանականության ձայնը և քաղաքավարությամբ ուղղելու իր սխալը, դիմում է տվյալ ուսուցիչներին «մշակելու» ավելի անթույլատրելի մեթոդի։ Նա հրապարակում է սկզբից մինչև վերջ վիճելի ու սխալներով լի մի հոդված, ուր դոգմատիզմի դիրքերից ու բոլորովին անհիմն կերպով քննադատում է իր հետ վիճած ուսուցիչներին։

Նման մեթոդներով ուսուցիչների հետ աշխատել չի կարելի։ Մանկավարժ-տեսաբանն ու մեթոդիստը կոչված են հետազոտելու և ուսուցիչներին ցույց տալու մանկավարժական այս կամ այն հարցի լուծման հնարավոր ուղիներն ու ձևերը և ոչ թե նրանց վզին փաթաթելու իրենց սուբյեկտիվ կարծիքը։

Ուսուցիչն օգնության և կողմնորոշման կարիք ունի, հատկապես այժմ, դպրոցի վերակառուցման այս պատասխանատու շրջանում, երբ շատ հարցեր դեռևս լուծված չեն։ Նրան պետք է ճիշտ ուղղություն տալ, հարկ եղած դեպքում ուղղել նրա սխալները, սակայն այնպես, որ այդ ամենը զերծ լինի մերկ վարչարարությունից, տեղի ունենա մտքերի ազատ փոխանակության կարգով, ընկերաբար ու բարեկամաբար, որպեսզի ուսուցիչը չկորցնի իր ինքնուրույնությունը, հնարավորություն ունենա ազատ հայտնելու իր կարծիքը և պաշտպանելու իր համոզմունքը։ Եթե նա սխալվում է, ապա պետք է նրան համոզել դրանում և խորհուրդ տալ, թե ինչպես այն ուղղել։

Ներկա հոդվածում մենք շոշափեցինք մանկավարժական ստեղծագործական աշխատանքի զարգացման մի շարք հարցեր, որոնք ո՛չ սպառելու, ո՛չ էլ ամբողջ խորությամբ լուսաբանելու հավակնություն ունեինք։ Մենք ցանկացանք միայն շոշափված հարցերի վերաբերյալ ամբողջ պարզությամբ ու անկեղծությամբ արտահայտել մեր կարծիքն ու մտորումները։ Եվ մենք անսահման գոհ կլինենք, եթե այս հոդվածը գոնե չնչին չափով նպաստի մանկավարժական ստեղծագործական աշխատանքի առաջխաղացմանը մեր ռեսպուբլիկայում։

---

սահմանելիս, պետք է լինել անցյալ տարիների փաստացի մակարդակից, միաժամանակ հաշվի առնելով նրանց հողային պայմանները, ջրապահովվածությունը, այգիների լիարժեքությունը, սորտայնությունը, անասունների ցեղայնությունը, և այլ պայմաններ։ Օրինակ, Վեդու շրջանի Կիրովի անվան ներտնտհաշվարկի անցած սովխոզում 1959 թվականին 16 բրիգադներում խաղողի բերքատվությունը սահմանվել է 62—132 ցենտներ (հեկտարից), մինչդեռ սովխոզի միջին բերքատվությունը նախատեսված էր 100 ցենտներ։ Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի կոլտնտեսությունում, տարբեր բրիգադների միջև եղած բերքատվության տարբերությունները կազմել են՝ հացահատիկի գծով 2,3, ծխախոտի՝ 2,9, խաղողի՝ 15,8 ցենտներ և այլն։

Պրակտիկայում հաճախ, հաշվի չառնելով պլանավորման այդ առանձնահատկությունը, տարբեր բրիգադների ու ֆերմաների գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասունների մթերատվության և մյուս ցուցանիշները չեն դիֆերենցվում, բոլորի համար սահմանվում է տնտեսության միջին ցուցանիշ։ Պլանավորման այդպիսի սխալ կարգը հանգեցնում է այն բանին, որ աշխատանքի միանման լարվածության պայմաններում, բրիգադները կամ ֆերմաները ունենում են միանգամայն տարբեր արտադրական ցուցանիշներ, հետևապես հավասար աշխատանքի լարվածության պայմանների համար՝ վարձատրության միանգամայն տարբեր չափ։ Այդ հանգամանքը թուլացնում է աշխատավորների նյութական շահագրգռվածությունը՝ արտադրանքի ավելացման և նրա ինքնարժեքի իջեցման համար, որն իր հերթին բացասաբար է անդրադառնում տնտեսության պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման վրա։

Պլանավորման գործում կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսական աշխատանքների նորմաների և նրանց գնահատումների ճիշտ սահմանումը։ Չնայած որ կոլտնտեսություններում ու սովխոզներում ամեն տարի մինչև արտադրաֆինանսական պլանների կազմումը վերանայվում ու ճշտվում են արտադրական նորմաները, սակայն դրանք չեն դիֆերենցվում ըստ բրիգադների ու ֆերմաների և սահմանվում են փորձավիճակագրական մեթոդով, որը լուրջ թերություններ ունի։ Նորմաների ճիշտ սահմանման համար անհրաժեշտ է լայնորեն կիրառել գիտականորեն հիմնավորված՝ տեխնիկական նորմավորման մեթոդը։ Այդ դեպքում բրիգադների և ֆերմաների առաջադրանքները կլինեն ռեալ և կհամապատասխանեն նրանց արտադրության պայմաններին։

Արտադրական միավորումը, ստանալով պլանային առաջադրանքներ, պատասխանատվություն է կրում միայն նրա կատարման համար, իսկ արտադրանքի ռեալիզացիան, բաշխումը, հարկերն ու ապահովագրական վճարները և այլն իրականացնում են կոլտնտեսության վարչությունը կամ սովխոզի դիրեկցիան։ Սակայն արտադրական միավորների, կոլտնտեսության վարչության կամ սովխոզի դիրեկտորի իրավունքների այս կողմը տեղերում որոշ ընկերներ սխալ են հասկանում. դրա հետևանքով էլ ամեն մի արտադրական միավոր դիտում են որպես ինքնուրույն ձեռնարկություն, նրանց զանազան ֆոնդերն առանձնացնելու, եկամտահարկը վճարելու, մթերքների ռեալիզացիայի և այլնի իրավունք տալով, որը իրավասու է կատարելու միայն կոլտնտեսության վարչությունը կամ սովխոզի դիրեկցիան։

Մեր երկրի շատ ռեսպուբլիկաների և մարզերի տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ այդպիսի տնտհաշվարկը լուրջ թերություններ ունի։ Այդ դեպքում առանձին բրիգադների շահերը հակադրվում են կոլտնտեսության ընդհանուր շահերին որպես մի ամբողջական ձեռնարկության։ Իջնում է կոլտնտեսության կամ սովխոզի դիրեկցիայի կողմից տնտեսության ղեկավարման օպերատիվությունը։ Բացի այդ, առանձին բրիգադների մեջ բաշխվող եկամուտները խիստ տարբերվում են միմյանցից և կախված են լինում ոչ այնքան իրենց աշխատանքի քանակից ու որակից, որքան արտադրության պայմաններից (ցանքատարածությունների չափից և սորուկտուրայից, հողից, մեքենայացման աստիճանից և այլն)։

Ներտնտեսային հաշվարկ կիրառելիս առանձնապես կարևոր նշանակություն ունի կոլտնտեսականների և սովխոզների բանվորների աշխատանքի վարձատրության և նյութական խրախուսանքի ճիշտ սիստեմի սահմանումը։ Պրակտիկայում տնտհաշվարկի անցած տնտեսությունների համար կիրառվում են աշխատանքի վարձատրության ամենաբազմազան ձևեր։ Դրանցից ամենալավ արդյունքը տալիս է այն կարգը, ըստ որի աշխատանքի վարձատրության պլանային ֆոնդը, որը տարիֆային դրույքների համաձայն գրանցվում է բանվորներին արտադրական նորմաների կատարման համար, բաժանվում է երկու մասի։ Առաջին մասը կոչվում է աշխատանքի երաշխավորված վարձատրության ֆոնդ, որն ամեն ամիս տրվում է կոլտնտեսականներին կամ սովխոզի բանվորներին։ Վարձատրության այս մասը վճարելիս հաշվի չի առնվում համախառն արտադրանքի և ինքնարժեքի պլանի կատարումը։ Ամեն մի տնտեսությունում աշխատանքի վարձատրության երաշխավորված ֆոնդի չափը որոշվում է տվյալ տնտեսուԹ..ն կողմից աշխատողներին ամենամսյա վարձատրություն տալու ռեալ հնարավորությունից և վերջին 3—5 տարվա ընթացքում տրված միջին վարձատրության չափից։ Վերջինս անհրաժեշտ է այն պատճառով, որպեսզի անբարենպաստ բնակլիմայական պայմաններում տնտեսությունը հնարավորություն ունենա աշխատավորներին վարձատրել երաշխավորված մինիմումից ոչ պակաս։ Սովորաբար աշխատանքի վարձատրության երաշխավորված մասը սահմանվում է վարձատրության ամբողջ ֆոնդի 60—85 տոկոսի չափով։

Աշխատավարձի ֆոնդի երկրորդ մասը, որը կազմում է ամբողջ ֆոնդի 15—40 տոկոսը, աշխատավորներին է տրվում տարեվերջին, նրանց կողմից համախառն արտադրանքի և ինքնարժեքի պլանային առաջադրանքները կատարելու համապատասխան։

Եթե տնտեսությունում աշխատանքի վարձատրության երաշխավորված մինիմումի չափը սահմանված է ամբողջ ֆոնդի 70 տոկոսը, իսկ բրիգադան կամ ֆերման համախառն արտադրանքի և ինքնարժեքի պլանը կատարել է 70 տոկոսով, ապա կոլտնտեսականները կամ բանվորները ստանում են միայն աշխատավարձի երաշխավորված մինիմումը, իսկ աշխատավարձի մնացած մասից (30 տոկոս) չեն օգտվում։ Պլանը 70—100 տոկոսով կատարելու դեպքում վարձատրություն են ստանում պլանի կատարման համապատասխան չափով։ Այսինքն՝ եթե պլանը կատարված է 95 տոկոսով, ապա վարձատրությունը կլինի ամբողջ աշխատավարձի ֆոնդի 95 տոկոսի չափով և այլն։

Երբ բրիգադան կամ ֆերման տալիս են գերպլանային համախառն արտադրանք, ապա լրացուցիչ կերպով ստանում են տարեկան աշխատավարձի ֆոնդից այնքան տոկոսով ավելի, որքան նրանք գերակատարել են պլանային առաջադրանքը։ Օրինակ, ենթադրենք պլանավորված է եղել, որ բրիգադան պետք է ստանա 60 հազար ռուբլու արտադրանք, բայց փաստորեն ստացել է 70 հազար ռուբլու, կամ 11,7 տոկոսով ավելի։ Եթե նախատեսված արտադրանքն ստանալու համար պլանավորվել են 25 հազար ռուբլու աշխատանքային ծախսումներ, ապա բրիգադային 2,92 հազար ռուբլի (25 հազարի 11,7 տոկոսը) լրացուցիչ վարձատրություն է հասնում։

Եթե բրիգադան կամ ֆերման գերպլանային համախառն արտադրանք տալու հետ մեկտեղ իջեցրել է արտադրանքի ինքնարժեքը, ապա տնտեսված գումարի 25—40 տոկոսը տրվում է որպես լրացուցիչ վարձատրություն, իսկ ինքնարժեքի բարձրացման դեպքում գերածախսի գումարի չափով պահում է կատարվում։

Պրակտիկայում կիրառվում է լրացուցիչ վարձատրության նաև այլ ձև։ Օրինակ՝ Վեդու շրջանի Կիրովի անվան սովխոզում և Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի կոլտնտեսությունում համախառն արտադրանքի գերակատարման և ինքնարժեքի իջեցման դեպքում լրացուցիչ տրվում է գերպլանային արտադրանքի մինչև 30 տոկոսի արժեքը և արտադրության համար նախատեսված ծախսերի տնտեսված մասի մինչև 25 տոկոսը։ Օրինակ, 1959 թվականին Կիրովի անվան սովխոզում № 8 խաղողագործական բրիգադան խաղողի պլանը գերակատարեց 1080 ցենտներով, կամ 136,5 տոկոսով, որի 30 տոկոսը, կամ 324 ցենտների արժեքը (վաճառքի գնով)՝ 10000 ռուբլին, բաշխվեց բրիգադայի անդամների միջև։ Բացի այդ, արտադրության ծախսերի 25 տոկոսը, կամ 2500 ռուբլին բաշխվեց այդ բրիգադայի անդամներին։ Ամբողջ լրացուցիչ վարձատրության գումարը կազմեց 12500 ռուբլի, որը մեկ մարդ-օրվա հաշվով կազմեց 2 ռուբլի 46 կոպեկ։

Կոլտնտեսության կամ սովխոզի վարչակառավարչական ապարատի աշխատողների համար, որոնք չեն մտնում տնտհաշվարկի միավորների կազմի մեջ, նպատակահարմար է սահմանել աշխատավարձի ամսական դրույքներ, ըստ ընդունված նորմաների, ելնելով ապրանքային արտադրանքի արտադրության ծավալից։

Բրիգադավարների, ֆերմաների վարիչների և մասնագետների վարձատրությունը պետք է կախման մեջ դրվի նրանց սպասարկած ճյուղի համախառն արտադրանքի և ինքնարժեքի մակարդակից։ Այդ կատեգորիայի աշխատողների համար նպատակահարմար է աշխատանքի ամենամսյա վարձատրության երաշխավորված մասի չափը սահմանել մոտ 70 տոկոս։

Տնտհաշվարկի ժամանակ արտադրական միավորների կողմից արտադրաֆինանսական պլանների իրականացումը մեծ չափով կախված է նաև տնտեսությունում պատշաճ ձևով կազմակերպված հաշվառումից և արտադրական առաջադրանքների ու նրանց վրա կատարված ծախսերի վերահսկողությունից։

Ըստ բրիգադների, ֆերմաների արտադրանքի առանձին տեսակների գծով կատարված ճշգրիտ հաշվառման դեպքում միայն հնարավոր է վերահսկել յուրաքանչյուր արտադրական ստորաբաժանման պլանի կատարումը և աշխատանքի ու միջոցների ծախսումը։ Այդ նպատակով յուրաքանչյուր տնտեսությունում հաշվառումը կազմակերպվում է ըստ բրիգադների և ֆերմաների, ինչպես նաև նրանց ներսում ըստ կուլտուրաների և անասնապահական մթերքների տեսակների։

Հաշվառման այդպիսի կարգը հնարավորություն է տալիս հսկելու արտադրական միավորների տնտեսական գործունեության բոլոր կողմերը,

Երևանի ու Լենինականի մսի կոմբինատների ղեկավարության պատշաճ վերահսկողության բացակայության պատճառով մսի ելունքը պակաս տացվեց 205, ճարպինը՝ 147 տոննայով։

Աշխատանքի որակական ցուցանիշներն իջեցնող հիմնական պատճառներից մեկը անարտադրողական կորուստներն են, որոնք ժողտնտխորհում, ամբողջությամբ վերցրած, կազմում են 5971 հազար ռուբլի։ Այս գումարից տուգանք է վճարվել՝ 2754 հազար ռուբլի արտադրանքի մատակարարման ժամկետներն ու ասորտիմենտը խախտելու համար, 317 հազար ռուբլի՝ վագոնների ու տրանսպորտի այլ տեսակների պարապուրդ տալու համար. արտադրության խոտանի գերպլանային կորուստները կազմել են 1529 հազար, այլ կորուստները՝ 594 հազար ռուբլի և այլն։ Խոտանից առաջացած կորուստները հատկապես մեծ են էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու սարքաշինության վարչության (276 հազար ռուբլի), մեքենաշինության ու հաստոցաշինության ձեռնարկություններում (208 հազար ռուբլի) և սննդի արդյունաբերության մեջ (154 հազար ռուբլի)։

Զգալի կորուստներ են եղել 1961 թվականին՝ նաև նյութերի և արտադրանքի պակասորդների ու փչանալու պատճառով։ 577 հազար ռուբլու կորուստների ընդհանուր գումարից ավտոդողերի գործարանին բաժին է ընկնում 52 հազար, Կիրովի անվան գործարանին՝ 31 հազար և «Խրոմպիկ»-ին՝ 21 հազար ռուբլի։ 1962 թվականի առաջին կիսամյակում անարտադրողական ծախսերը կազմել են 1570 հազար ռուբլի։

Այս բոլոր փաստերը ցույց են տալիս, որ շատ ձեռնարկություններում վատ է դրված տնտեսական ու առևտրական աշխատանքը, վճռական պայքար չի մղվում նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքների հասնելու համար, տեղական պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները գործնական վերահսկողություն չեն իրագործում տնտեսական գործունեության նկատմամբ։

Տնտեսական աշխատանքի լուրջ թերություններից է այն, որ աշխատանքի արդյունքների խոր ու սիստեմատիկ վերլուծություն չի կատարվում. մինչդեռ դա հնարավորություն կտար կանխելու արտադրական կորուստները, բացահայտելու և օգտագործելու ներքին ռեզերվները։ Մինչև այժմ շատ ձեռնարկություններում տեխնիկա-տնտեսական խորհուրդներ չեն ստեղծված, թեև դրա մասին կա նաև Ժողովրդական Տնտեսության Խորհրդի որոշումը։

Շատ ձեռնարկություններ (ձեթ-օճառ կոմբինատ, ֆրեզերային հաստոցների գործարան, Աբարկիրի կահույքի ֆաբրիկա, ավտոդողերի գործարան, Երևանի պահածոների գործարան և այլն) պաշտոնական գործուղումների համար շռայլորեն ծախսում են պետական միջոցները։ Ինչպես ստուգումները ցույց են տվել, այդ գործուղումներից շատերն անհրաժեշտ չեն եղել, այն հարցերը, որոնց համար նրանք գործուղվել են, կարող էին լուծվել կամ տեղում, կամ ժողտնտխորհի նյութատեխնիկական մատակարարման ու վաճառահանման գլխավոր վարչության Մոսկվայի բաժանմունքի միջոցով։

Շարունակվում է, այսպես կոչված՝ «հրողների» գործուղման արատավոր պրակտիկան։ Հենց միայն անցյալ տարի Հայէլեկտրագործարանը ամսական 10—15 «հրողներ» է գործուղել՝ ամեն մեկին մինչև երեք շաբաթ տևողությամբ։ Գործուղումների գումարները գերածախսվում են, բայց արդյունքը հաճախ աննշան է լինում։

Թողարկվող արտադրանքի անբավարար որակի հետևանքով երբեմն անհրաժեշտ է լինում ձեռնարկության ներկայացուցիչներին գործուղել տեղերը առաքված արտադրանքի վնասի հատուցման պահանջը կազմելուն մասնակցելու համար։ Այս նպատակով Հայէլեկտրագործարանը ամսական 4—5 մարդ է գործուղել, յուրաքանչյուրին 20 օրով։ Արդյունաբերության աշխատողներին ռեսպուբլիկայից դուրս գործուղելու համար սահմանված կանոնների խիստ պահպանումը մեծ չափով կկրճատի ընդհանուր գործարանային ծախսերը, որոնք զգալի տեղ են գրավում արտադրության ընդհանուր ծախսումների մեջ։

Ընթացիկ տարում ժողտնտխորհի արդյունաբերության առաջ խոշոր ու պատասխանատու խնդիրներ են դրված։ Ներարտադրական ռեզերվների հայտաբերման, դրամական ու նյութական ռեզերվների տնտեսման ռեժիմի իրականացման հաշվին արդյունաբերությունը ապրանքային արտադրանքի ինքնարժեքը 1961 թվականի համեմատությամբ պետք է իջեցնի 0,7 տոկոսով։

Ընթացիկ տարվա երկրորդ եռամսյակում տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշների են հասել Կիրովի անվան, էլեկտրամեքենաշինական, Երևանի ալյումինի, Էջմիածնի պլաստմասսաների, Արզնիի ճշգրիտ տեխնիկական քարերի և Երևանի կոնյակի գործարանների կոլեկտիվները, որոնք արժանացել են մրցանակների և փոխանցիկ կարմիր դրոշների։ Հիդրոպոմպերի գործարանը արժանացել է ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի և քաղսովետի պարտիայի շրջկոմի և շրջանային սովետի փոխանցիկ դրոշներին։

Կիրովի անվան գործարանը՝ ռեսպուբլիկայում ծավալված սոցիալիստական մրցության նախաձեռնողը, ամեն ամիս համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարում է ավելի քան 103 տոկոսով, կատարում է նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը։ Այստեղ մեկ ռուբլու ապրանքային



արտադրանքի վրա կատարված ծախսումները զգալի չափով ցածր են պլանով նախատեսվածից, տնտեսված է մեծ քանակությամբ կալցիումի կարբիդ, էլեկտրաէներգիա և այլն։ Այստեղ պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները լրջորեն զբաղվում են արտադրության տնտեսությամբ և կոլեկտիվին մղում դրամական միջոցները, նյութական ու աշխատանքային ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու նպատակին, նպաստում են բացահայտելու և գործադրելու տնտեսության մեջ եղած հսկայական ռեզերվները։

Ձեռնարկությունների աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների հետագա բարելավումը պետք է ընթանա նաև սարքավորման կարողությունների, հումքի, նյութեղենի, վառելանյութի և էլեկտրաէներգիայի օգտագործման առաջավոր նորմանները կիրառելու հաշվին։

Վերջին տարիներս հումքի ու նյութեղենի նորմավորումը կազմակերպելու և նրանք տնտեսավար օգտագործելու ուղղությամբ որոշ աշխատանք է կատարված։ Ձեռնարկություններում մշտապես գործող հանձնաժողովներ են ստեղծվել սև ու գունավոր մետաղների, վառելանյութի ու էլեկտրաէներգիայի տնտեսման համար, կազմակերպվել են հասարակական ստուգատեսներ և այլ մասսայական միջոցառումներ, որոնք 1961 թվականին հնարավորություն են տվել տնտեսելու ավելի քան 500 տոննա պղինձ, 100 տոննա բրոնզ և նիկել պարունակող 115 տոննա պողպատ։ Սակայն դեռ քիչ չեն այն ձեռնարկությունները, որտեղ տարիներ շարունակ նյութեղենի և հումքի ծախսի նորմաները չեն վերանայվում, տեղ-տեղ այդ նորմաները բարձրացվել են և հումքի մեծ գերածախսեր են թույլ տրվում։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ ընթացիկ տարում հենց միայն նորմաների իջեցման հաշվին կարելի է տնտեսել երկու հազար տոննա սև մետաղի գլանվածք։ Մետաղի ծախսի հետագա նվազեցման կարևոր ռեզերվներ են թողարկվող մեքենաների կշռի իջեցումը, կոնստրուկցիաների տեխնոլոգիայի բարձրացումը, պլաստիկ մասսաների, մամլած փայտանյութի և այլ նյութերի կիրառումը։

Այսպես, պղնձի փոշուց կոլեկտորի թիթեղների արտադրությունը տալիս է 60 տոննա պղնձի գլանվածքի տնտեսում։ Կոմպրեսորների շարժաձողերը բարիտի օգտագործմամբ ձուլելիս կարելի է տնտեսել մինչև 3 տոննա կապար։ ՆԴՄ տիպի պոմպերի լիսեռներ և այլ դետալներ պատրաստելիս հնարավոր է թանկարժեք լեգիրացված պողպատը փոխարինել կոնստրուկցիոն պողպատով։ Անհրաժեշտ է բարելավել ձեռնարկությունների տեխնոլոգիական ծառայությունների գործունեությունը նյութական ռեսուրսների ծախսը նորմավորելու և դրանց տնտեսման կազմակերպական-տեխնիկական միջոցառումների իրականացման բնագավառում. 1962—1963 թվականների ընթացքում ապահովել արտադրության բոլոր կարիքների համար սպառվող հումքի, նյութերի, վառելանյութի ու էլեկտրաէներգիայի ծախսի աստիճանական ընդգրկումը՝ նորմաներով։ Այս գործում պետք է վճռական դեր խաղան ժողտնտխորհի գիտահետազոտական ու նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններին առընթեր նյութական նորմատիվների և հումքի ու նյութերի տնտեսման ճյուղային մասնագիտացված բաժինները։

Հումքային ռեսուրսների ավելացման և արտադրության ծախսումների տնտեսման կարևոր աղբյուր է նաև հիմնական արտադրության մնացուկների օգտագործումը արդյունաբերության բոլոր ճյուղերում։ Ավտոդողերի գործարանում ռետինացված կորդի մնացուկներից կարելի է արտադրել տանիքի ալիքավոր թերթեր, որոնք պետք են կոլտնտեսային շինարարության համար։ Կիրովի անվան գործարանում սեղանի աղի էլեկտրոլիզի ցեխից ավելցուկային ջրածինը բաց է թողնվում մթնոլորտ։ Մինչդեռ, եթե գործարանում կառուցվի ջրածնից քլորի խառնուկը մաքրելու կայան, կարելի է մեկ ժամում ստանալ 150 խմ ջրածին, որի սուր կարիքն ունեն սննդի արդյունաբերությունը և արդյունաբերության մյուս ճյուղերը։ Կաթի գործարանների տեխնիկական բազայի որոշ ընդարձակման դեպքում հնարավոր է զգալի չափով ավելացնել կաթնամթերքների արտադրությունը յուղազերծված կաթից ու շիճուկից, որոնք այժմ արդյունաբերությունը լիովին չի օգտագործում։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել անարտադրողական ծախսերի, ինչպես և խոտանի կորուստների առաջացման պատճառները վերացնելուն։ Միաժամանակ պետք է բարձրացվի տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը թույլ տրված անարտադրողական ծախսերի համար, իսկ անարտադրողական ծախսերի պատճառած վնասը պետք է վերագրել համապատասխան վարչություններին և բաժիններին, մեղավորներին խիստ պատասխանատվության ենթարկել։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ եթե նույնիսկ 20—30 տոկոսով կրճատվեն խոտանից ու անարտադրողական ծախսերից առաջացող կորուստները, արտադրանքի ինքնարժեքը կիջնի ավելի քան 1,5 միլիոն ռուբլով։

Տնտեսական աշխատանքի դրվածքը տեղերում բարելավելու նպատակով անհրաժեշտ է բոլոր ձեռնարկություններում կազմակերպել տնտեսական վերլուծության հասարակական բյուրոներ, որոնք արտադրության, աշխատանքի ու ինքնարժեքի պլանները չկատարելու յուրաքանչյուր դեպք մանրազնին կքննեն և միջոցառումներ կըմշակեն ձեռնարկության աշխատանքում եղած

Տնտեսագիտության ինստիտուտում կատարված հաշվումները ցույց են տվել, որ Հրազդանի ցեմենտի գործարանում բելիտային շլամի օգտագործումը, ինչպես նաև կոմբինացված աշխատանքը կոմբինատի մյուս արտադրությունների հետ, հնարավորություն կտան այդ գործարանում հասնելու չափազանց բարձր տեխնիկա-տնտեսական ցուցանիշների։ Բավական է նշել, որ բարձր մարկայի մեկ տոննա պորտլանդ ցեմենտի ինքնարժեքը կկազմի 5ռ. 28 կոպեկից—5ռ. 83 կոպեկ։ Այսպիսով, Հրազդանի ցեմենտը, ցածր ինքնարժեքի շնորհիվ (ներառյալ տրանսպորտային ծախսերը), կլինի ավելի էժան, քան Անդրկովկասի մյուս գործարանների արտադրանքը։

***

Պորտլանդ ցեմենտն ունի գորշ կանաչավուն գույն, որի հետևանքով էլ պիտանի չէ շենքերի արտաքին երեսպատման և ճարտարապետական մի շարք դեկորատիվ գործերի համար։ Այդ պատճառով շինարարության մեջ հիմնականում օգտագործվում են սպիտակ և գունավոր—դեկորատիվ ցեմենտները։

Գունավոր-դեկորատիվ ցեմենտներ ստանում են սպիտակ ցեմենտից։ Գունավոր ցեմենտի օգտագործումը տարեցտարի ընդլայնվում է։ Դրանից պատրաստվում են երեսպատման սալիկներ, արհեստական մարմար, երկար պահպանվող մոզաիկա, ամբողջական գունավոր բլոկներ, աստիճաններ և այլն։

Գունավոր ցեմենտի օգտագործման շնորհիվ լայնորեն կբավարարվեն բնակչության պահանջները, հնարավոր կլինի կառուցել ավելի գեղեցիկ թաղամասեր ու բնակավայրեր։ Ապագայում, երբ առատ լինի գունավոր ցեմենտը, հնարավոր կդառնա բետոնից կառուցված մայրուղիների և ավտոճանապարհների վերին շերտը պատել գունավոր ցեմենտից պատրաստած շաղախով։

Շենքերի երեսպատման համար գունավոր ցեմենտների օգտագործումը հնարավորություն կտա անտեսել այն միջոցները, որոնք ծախսվում են շենքի արտաքին սվաղման ու ներկման վրա։

Դեկորատիվ ցեմենտը հատուկ հետաքրքրություն է ներկայացնում Հայաստանի համար, որտեղ մինչև հիմա շենքերը կառուցվում էին տարբեր գույն ու երանգ ունեցող գեղեցիկ տուֆից։ Շինարարության ինդուստրացումը ապագայում կպահանջի, որ պատերը հիմնականում շարվեն բետոնային պանելներով, որոնց տեսքն այնքան էլ գրավիչ չէ, իսկ նրանց երեսպատումը թանկ է նստում։ Սպիտակ և գունավոր ցեմենտով երեսպատված պատերի պանելների արտադրությունը կլուծի շինարարական աշխատանքների ինդուստրացման հարցը և միաժամանակ շենքին կտա գեղեցիկ արտաքին տեսք։

Խիստ նպատակահարմար է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի ցեմենտի գործարանում կազմակերպել սպիտակ և դեկորատիվ ցեմենտի արտադրությունը, քանի որ հենց տեղում առկա է արտադրությունը որակով և էժան հումքով ապահովող բազան։

Հրազդանի կոմբինատի կավահողի գործարանի յուրաքանչյուր հերթը սպիտակ ցեմենտի և այլ նյութերի համար կարող է թողարկել 43 հազար տոննա կալցիումի մետասիլիկատ (սպիտակ շլամ), որը պիտանի է ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի և, հատկապես, դեկորատիվ ցեմենտներ արտադրելու համար, մանավանդ, որ փոխադրության ծախսերը շատ քիչ կլինեն։ Որպես կարբոնատային հումք այստեղ հնարավոր է օգտագործել Մայմեխի սպիտակ մարմարը, որը կառուցվող կոմբինատի տերիտորիայից բավական մոտ է։

***

Հայաստանը տարբերվում է երկրի հյուսիսային և մի շարք շրջաններից. սեյսմիկականությունը հասնում է 7 բալի։ Այդ պայմաններում 8—10 տոկոսով բարձրանում է ցեմենտի պահանջը։ Հայաստանը լեռնային երկիր է, որտեղ երկաթուղային լայն շինարարությունը որոշակի դժվարությունների հետ է կապված։ Ուստի Հայաստանին անհրաժեշտ է բետոնածածկ ավտոճանապարհների և խճուղիների լայն ցանց։ Ռեսպուբլիկայում շատ ցեմենտ է պահանջում նաև բարդ հիդրոտեխնիկական կառուցումներով հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։

Ռեսպուբլիկայի բուռն զարգացող գյուղատնտեսությունը պահանջում է ոռոգել նախկինում քիչ օգտագործված կամ բոլորովին չօգտագործված խամ ու խոպան հողերը, որը կապված է նոր ջրանցքների և ջրամբարների շինարարության հետ։ Առաջիկա երկու տասնամյակում ռեսպուբլիկայում շահագործման կհանձնվեն մի շարք ջրանցքներ ու ջրամբարներ. կվերակառուցվեն բազմաթիվ ջրանցքներ ու ոռոգող սիստեմներ։

Ներկայումս ոռոգման նպատակով ջրանցքներով հոսող ջրի զգալի մասը, ֆիլտրացիայի և գոլորշիացման հետևանքով կորչում է։ Քանի որ ռեսպուբլիկայի ջրային ռեսուրսները շատ սահմանափակ են, ուստի դրանք ավելի խնայողաբար օգտագործելու համար անհրաժեշտ է ջրանցքները բետոնապատել, ինչպես նաև օգտվել խողովակներով, որը հնարավորություն կտա խնայել հսկայական քանակի ջուր և դրանով ոռոգել նորանոր հողային տարածություններ։

Շինարարական ինդուստրիայի հետագա զարգացումը պահանջում է օգտագործել ավելի շատ շինարարական կոնստրուկցիաների դետալներ՝ ցեմենտի և բնական այլ թեթև լցանյութերի բազայի վրա, միաժամանակ կրճատելով անտառանյութի, քարի և մետաղի օգտագործումը, թեթև և էժան նյութերից պատրաստված հավաքովի կոնստրուկցիաներով կառուցելը խիստ արդյունավետ է։ Սակայն դրանց արտադրությունը ռեսպուբլիկայում դեռևս անբավարար է ցեմենտի պակասության պատճառով։

Ցեմենտի արտադրության ավելացումը հնարավորություն կստեղծի կազմակերպել խոշոր մասշտաբների շիֆերի արտադրություն, որը շատ լավ նյութ է ծածկի համար։ Կարելի կլինի կազմակերպել ասբոցեմենտային խողովակների, երկաթուղային մի շարք հավաքովի կոնստրուկցիաների՝ սյուների, շպալների, հաղորդագծերի հենարանների, գյուղատնտեսական կամրջակների խոշոր պանելների, ջրամեկուսիչ առարկաների և այլնի արտադրությունը։

Հայկական ՍՍՌ-ն առատ ցեմենտի առկայության դեպքում կկարողանա շինարարական թեթև դետալներով բավարարել ոչ միայն իր, այլև մյուս տնտեսական շրջանների կարիքները, որոնք ներկայումս բնական տեսքով լցանյութը ստանում են դրսից, կամ կազմակերպում արհեստական լցանյութերի արտադրություն, ինչպիսին են կերամզիտը, ագլոպորիտը, որոնք մի քանի անգամ թանկ են նստում։

Հայաստանում նշանակալից քանակությամբ պորտլանդ և արագ կարծրացող սպիտակ ու գունավոր դեկորատիվ ցեմենտների արտադրության ավելացումը հնարավորություն կտա արագ առաջ մղելու արդյունաբերական օբյեկտների, ջրային տնտեսության ու բնակարանային շինարարությունները, խոշոր մասշտաբներով զարգացնելու շինարարական դետալների և կոնստրուկցիաների արտադրությունը, որը կապահովի շինարարական առավել ինդուստրիալ մեթոդների անցումը, կօգնի Անդրկովկասի ռեսպուբլիկաների միջև տնտեսական կապերի հետագա ընդլայնմանը և կնպաստի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։

Գ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ
Հայկական ՍՍՌ ԳԱ Տնտեսագիտության ինստիտուտի կրտսեր գիտական աշխատող

---

## ՕԳՏԱԿԱՐ Է ԻՄԱՆԱԼ

★ Օդեսայի ժողտնտխորհում անց է կացվել տեխնոլոգիայի մակարդակի, արտադրության ռեզերվների և կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման հասարակական ստուգատես։ Այդ ստուգատեսին մասնակցել են տասնյակ հազարավոր բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ, գիտնականներ և ուսանողներ։ Ստացվել է ավելի քան 35 հազար առաջարկություն, որոնցից մոտ 25 հազարն ընդունվել է։ Դրանց շնորհիվ տարեկան կտնտեսվի մոտ 35 միլիոն ռուբլի։

★ Նյութական և էներգետիկ ռեսուրսների տնտեսման անձնական հաշիվներն են դրված Ուրալի վագոնաշինական գործարանում լայնորեն ծավալված անհատական սոցիալիստական մրցության հիմքում։ Վերջերս շատ բանվորներ նույն ձևով բաց են արել աշխատաժամանակի տնտեսման անձնական հաշիվներ։ Այդ հնարավորություն է տալիս մեծ թվով աշխատողների ընդգրկել աշխատանքի ու արտադրության կազմակերպման համար մղվող ակտիվ պայքարում, հայտաբերել նոր ռեզերվներ։ Այդ ձևն արժեքավոր է նրանով, որ բանվորն ինքն է դառնում ուսումնասիրողը և միջոցառումներ նախագծողը։ Անձնական հաշիվը ձևակերպվում է ժուռնալում, որն ունի անջատվող կտրոններ, որոնց վրա նշվում են աշխատաժամանակի կորստի պատճառները վերացնելու նպատակով արված ռացիոնալիզատորական առաջարկությունները։

★ Մոտ 6 միլիոն հաշվարարական գործողություններ են պետք առանցքակալների առաջին պետական գործարանների տեխարդֆինպլանը կազմելու համար։ Սովորական հաշվիչ մեքենաների օգտագործման դեպքում այդ աշխատանքի համար պահանջվում են ավելի քան 91 հազար մարդ-ժամ և մոտ 40 հազար ռուբլի աշխատավարձ։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառմամբ այդ ծախսերը հասնում են մինչև 28 մարդ-ժամի և 1000 ռուբլու։

մոտ 80 տոկոս ՕԳԳ-ով էլեկտրաէներգիայի ինքնուրույն ստացման համար: Այդպիսի վառելանյութային էլեմենտներ, հավանաբար կմըշակվեն առաջիկա 10—15 տարվա ընթացքում:

Այդ ձևով մենք կարող ենք իրոք բնական գազի և նավթի բոլոր պաշարները ծառայեցնել օրգանական սինթեզին, հատկապես շատ մեծ քանակությամբ պոլիմերային նյութերի ստացմանը:

Գյուղատնտեսությունն ու սննդի արդյունաբերությունը լիովին կէլեկտրիֆիկացվեն և կավտոմատացվեն: Էժան էլեկտրաէներգիայի ավելցուկի առկայության դեպքում պարարտանյութերի արտադրությունը, ինչպես ես արդեն նշել եմ, խիստ կպարզեցվի և կարող է ընդլայնվել մինչև ցանկացած մասշտաբները: Անջրդի շրջանների ոռոգումը՝ պլաստմասսաներից պատրաստված թաղանթների կիրառմամբ ինչպես հողի շերտերի տակ, այնպես էլ բույսերի վերևում խոնավությունը պահելու համար, Հյուսիսում հողերի տաքացումը՝ արհեստական լույս ունեցող հսկայական չափի ջերմոցների և մեծ ջերմատների կիրառմամբ, թույլ կտան ամենուրեք ստանալ բարձր բերք և շատ դեպքերում՝ տարեկան երկու անգամ: Էլեկտրաէներգիայի հսկայական ռեսուրսները թույլ կտան լայն մասշտաբներով քաղցրահամ դարձնել ծովերի և աղի լճերի ջուրը:

ԲՈԼՈՐԻՆ, ԻՀԱՐԿԵ, պարզ է, թե որքան պայծառ և հարմարավետ կլինի մարդկանց կյանքը կենցաղի լրիվ էլեկտրիֆիկացման ժամանակ: Այստեղ ես կնիշատակեմ միայն, որ էժան էլեկտրաէներգիայի այդպիսի ավելցուկի դեպքում հնարավոր կդառնա ամեն ինչ փոխադրել էլեկտրական ջեռուցման և ամեն տեղ կոնդիցիոնված օդ ունենալ:

Արտադրության լրիվ ավտոմատացումը կհանգեցնի այն բանին, որ հանրօգուտ աշխատանքային օրը կկրճատվի օրական մինչև 3—4 ժամ: Մնացած ժամանակը մարդիկ կնվիրեն իրենց սիրելի պարապմունքներին՝ սպորտին, այգեգործությանը, գեղարվեստական ինքնագործունեությանը, ժողովրդական թատրոնների աշխատանքին, գեղարվեստի ու գրականության և, հատկապես, գիտության ու տեխնիկայի ստեղծագործական պարապմունքներին՝ հիմնայի հասարակական լաբորատորիաներում, որոնք կդառնան գիտության մասսայական զարգացման կենտրոններ:

Այդպես եմ ես պատկերացնում կյանքը XXI դարում, համատարած էլեկտրիֆիկացիայի դարում: Ահա այն իսկական ժառանգությունը, որը մենք կարող ենք թողնել մեր երեխաներին, թոռներին և ծոռներին: Այդ իրական հեռանկարների լույսի տակ մարդկության առջև մեծագույն ոճրագործներ չե՞ն հանդիսանում արդյոք այն մարդիկ, որոնք վարում են պատերազմի եզրի քաղաքականություն, իսկ հատկապես նրանք, ովքեր. քարոզում են պատերազմների անխուսափելիությունն ու անհրաժեշտությունը: Գիտության ու տեխնիկայի ժամանակակից զարգացման պայմաններում այդ նվաճումների օգտագործումը ավերման նպատակներով՝ սպառնում է չտեսնըված մասշտաբի համաշխարհային աղետ: Նա վիշտ կբերի բոլոր մարդկանց և մահ՝ հարյուր միլիոնավորներին, կհանգեցնի բոլոր նյութական արժեքների լրիվ ավերմանը: Այդ դեպքում մենք կթողնենք մեր երեխաներին, թոռներին ու ծոռներին ավերված, լերկ, ռադիոակտիվությամբ վարակված երկիրը, մենք իբրև ժառանգություն նրանց կթողնենք անհավատալի ծանր կյանք և այլասերում:

Բոլոր երկրների ժողովուրդները ընդհանուր ջանքերով պետք է կանխեն այդ անիմաստ, ոճրագործ և միաժամանակ խելագար թերևամիտ խաղը պատերազմի հետ, միավորվեն խաղաղության ու լրիվ զինաթափման համար մղվող ընդհանուր պայքարում: Բոլոր երկրների ժողովուրդները պետք է իրենց բոլոր ջանքերն ուղղեն գիտության ու տեխնիկայի այնպիսի զարգացմանը, որը կապահովեր մարդկության արագ մուտքը դեպի նոր, երջանիկ դարագլուխ:

Հասարակական պրոգրեսի նպատակը, իդեալը կարելի է ձևակերպել մոտավորապես հետևյալ կերպ՝ առավելագույն երջանկություն առավելագույն թվով մարդկանց համար, գործնականորեն՝ բոլորի համար: Այդ բանի առաջին նախադրյալը, բնականաբար, երկրագնդի վրա յուրաքանչյուր մարդու նյութական ու կուլտուրական տարբեր պահանջմունքների լրիվ բավարարումն է: Սակայն նյութական պահանջմունքների բավարարումը դեռևս բավական չէ մարդկանց երջանիկ կյանքի համար, թեև դա, անշուշտ, հիմնական ու անհրաժեշտ նախադրյալ է մարդու լիարժեք հոգևոր գործունեության համար: Բայց մարդն իր բնությամբ ոչ միայն սպառող է, այլև նյութական ու հոգևոր արժեքների ստեղծող: Ստեղծագործական գործունեության նկատմամբ պահանջմունքը ո՛չ միայն ամենից ավելի ազնըվաբարո, այլև ամենից ավելի առաջնային, խոր ու անշեջելի պահանջմունքներից մեկն է: Այսպիսով, մեր մեծագույն խնդիրն է՝ մարդկանց ամենալայն մասսաներին մասնակից դարձնել ստեղծագործական բազմազան գործունեությանը:

Ոմանք, գուցե, չհամաձայնվեն երջանկության այդպիսի հասկացողության հետ, որի մասին ես ասում եմ: Իհարկե, այսօր շատ մարդիկ երջանկությունը տեսնում են ո՛չ թե ակտիվ ստեղծագործական գործունեության մեջ, այլ նրանում, ոռպեսզի գործերից հեռանալով կամ գործերից



հետո անձնատուր լինեն կյանքի ինչ-որ խաղաղ, կամ, ընդհակառակը, բուռն ուրախություններին: Բայց ես անձամբ հաստատ համոզված եմ, որ երջանկության նման հասկացողությունը տեղի է ունենում հոգեկան աղքատությունից կամ հասարակական այն պայմանների բացակայության պատճառով, որոնք ապահովում են յուրաքանչյուր նորմալ մարդու մեջ պոտենցիալ կերպով գոյություն ունեցող ստեղծագործական ձգտումների և ընդունակությունների դրսևորումն ու զարգացումը: Մի խոսքով, որպեսզի յուրաքանչյուր մարդ կարողանա հանդես բերել իր ստեղծագործական ուժերը և դրանից մեծ հաճույք ստանալ, պետք են նրա մտքի ու զգացմունքների որոշակի զարգացում ու դաստիարակում, անհրաժեշտ է գիտելիքների, էսթետիկական ճաշակների, վերջապես բարոյագիտության, հասարակության նկատմամբ և ինքն իր նկատմամբ ունեցած բարոյական վերաբերմունքի որոշակի մակարդակ: Իսկ դրա համար հարկավոր են այնպիսի տնտեսական ու սոցիալական պայմաններ, որոնք հնարավորություններ կստեղծեին բոլոր մարդկանց բազմակողմանի զարգացման ու ստեղծագործական գործունեության համար:

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ հասարակության գլխավոր նպատակը հոգատարությունն է մարդու նկատմամբ, նրա նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման, նրա ստեղծագործական պոտենցիայի առավելագույն զարգացման նկատմամբ:

Պետք է, ի դեպ, ասել, որ միայն նյութական բարեկեցությունը չի որոշում մասսաների հոգեվոր, ստեղծագործական զարգացման հնարավորությունները, այլ, ընդհակառակը, մասսաների ստեղծագործական գործունեությունն իր հերթին որոշում է հասարակության նյութական պրոգրեսը:

Ներկայումս մեր ամբողջ ժողովրդի առջև ծառացած են երկու հիմնական, միաժամանակ կարևոր և սերտորեն փոխադարձ կապված խնդիրներ: Առաջին, մարդկանց տարբեր պահանջմունքների լրիվ բավարարման համար անհրաժեշտ բարձր նյութատեխնիկական բազայի ստեղծումը: Երկրորդ, կոմունիստական հասարակության նոր մարդու դաստիարակումը, յուրաքանչյուր մարդուն բազմակողմանիորեն զարգացած անձնավորություն դարձնելը, որն ընդունակ լինի անհատական ստեղծագործական գործունեության համար, մի անձնավորություն, որը լինի խորապես գիտակից, ոգեշնչված հումանիստական գաղափարներով:

Հենց սրանք են կոմունիստական հիմնական իդեալները, որոնք արտահայտված են կլասիկ ձևով՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների»:

«Комсомольская правда», *1962 թ., սեպտեմբերի 12:*

---

նը փոխելու համար անհրաժեշտ է գործել ավելի նպատակասլաց ու վճռական։ Ելնելով այդ սկզբունքից, «100-ի կոմիտեն» կազմակերպում է քաղաքացիական անհնազանդության ակտեր, որոնց մասնակցում են տասնյակ հազարավոր մարդիկ։ Օրինակ, 1961 թվականին Լոնդոնում, պաշտպանության մինիստրության և պառլամենտի շենքերի առաջ, ինչպես նաև Տրաֆալգարի հրապարակում կոմիտեն անցկացրեց բողոքի մի քանի հզոր ցույցեր։ Վախենալով «100-ի կոմիտեի» ազդեցության ուժեղացումից և նրա գործողությունների ակտիվացումից, անգլիական կառավարությունը դիմեց ոստիկանական ռեպրեսիաների։ Բայց, չնայած այդ ամենին, կոմիտեն ավելի է աշխուժացնում իր գործունեությունը։

Աստիճանաբար ավելի բարձր է հնչում ԱՄՆ-ի խաղաղության կողմնակիցների ձայնը։ Հակապատերազմական ուժերն այստեղ կազմակերպում են խաղաղության արշավներ, մասսայական ցույցեր, կառավարական հիմնարկների շուրջը կարգում են պիկետներ և այլն։ ԱՄՆ-ում հաջողությամբ է գործում «Միջուկային խոհեմ քաղաքականության ազգային կոմիտեն», որի մեջ մտել են ամերիկյան ականավոր գիտնականներ, արվեստի ու գրականության գործիչներ, կրոնական շրջանների ներկայացուցիչներ։ Կոմիտեն պահանջում է վերացնել միջուկային սպառնալիքը և դադարեցնել ատոմային զենքի փորձարկումները։ Իսկ «Առանց բռնությունների գործողության կոմիտեի» նախաձեռնությամբ պայքար է ծավալվում զինված ուժերը միջուկային հրթիռներով զինելու դեմ։

1961 թվականի մարտի 26-ից մինչև ապրիլի 1-ը ԱՄՆ-ում կազմակերպվեց խաղաղության մեծ արշավ՝ «Անվտանգություն՝ զինաթափման միջոցով» լոզունգով։ Սկսելով իրենց արշավը Մակգիր ռազմա-օդային ուժերի բազայից (այստեղ 1960 թ. այրվեց միջուկային լիցքով «Բոմարկ» հրթիռ-ինքնաթիռը, որը մեծ սարսափ առաջացրեց շրջակա բնակչության մեջ) անցնելով մի շարք քաղաքներով, նրա մասնակիցները եկան Նյու-Յորք։ ՄԱԿ-ի շենքի մոտ տեղի ունեցավ մասսայական միտինգ։ Այդ արշավին աջակցում էին մի շարք կազմակերպություններ՝ արհմիութենական, քվակերների, «Ամերիկացիները դեմոկրատական գործողությունների կողմնակիցներ են», «Խաղաղության և ազատության պայքարի լիգան» և այլն։

Ինչպես ամբողջ աշխարհի, այնպես էլ ԱՄՆ-ի խաղաղասեր ուժերը վճռականորեն դատապարտեցին ամերիկյան իմպերիալիստների միջուկային նոր փորձարկումները։ ԱՄՆ-ի տարբեր քաղաքներում կազմակերպվեցին բողոքի ցույցեր։ Երկրի զանազան վայրերից խաղաղության մարտիկները գալիս էին Վաշինգտոն՝ Սպիտակ տուն և կառավարությունից պահանջում վերջ տալ փորձարկումներին։ Սոսալիտոյում (Կալիֆոռնիայի նահանգ) միջուկային փորձարկումների դեմ պայքարող մի խումբ ցուցարարներ ջուր իջեցրին մի փոքրիկ նավակ՝ «Էվրիմեն» անունով։ Ամերիկացի երեք երիտասարդներ, ի նշան բողոքի, այդ նավակով ուղևորվեցին փորձարկումների շրջանը՝ դեպի Ծննդյան կղզի։

Հրթիռա-միջուկային պատերազմի դեմ պայքարելու գործում չափազանց մեծ դեր են կատարում արվեստի ու գրականության գործիչները, հատկապես գիտնականները։ Նրանք տագնապի, բողոքի ձայն են բարձրացնում ժամանակակից մահաբեր զենքերն արգելելու, մեր մոլորակի վրա կայուն խաղաղություն հաստատելու համար։

Միջուկային սպառազինությունները դադարեցնելու, ատոմային զենքը արգելելու համար պայքարում են այնպիսի աչքի ընկնող գիտնականներ, ինչպես՝ Ջոն Բեռնալը (Խաղաղության Համաշխարհային Խորհրդի գործադիր պրեզիդենտը), Լայնուս Պոլինգը, Ալբերտ Շվեյցերը, Բերտրան Ռասսելը, Ալեքսանդր Ռոդդը, Թոմաս Ուեյլերը, Սահիբ Սինգ Սոքհեյը, Լեոպոլդ Ինֆելդը, Հարոլդ Յուրին և շատ ուրիշներ։ Ատոմային սպառազինությունների դեմ իր ձայնն էր բարձրացնում աշխարհահռչակ գիտնական Ալբերտ Էյնշտեյնը։

Միջուկային հրատապ պրոբլեմների լուծման համար ամբողջ աշխարհի գիտնականներին համախմբելու ուղղությամբ մեծ դեր են խաղում գիտնականների միջազգային Պագուոշյան (Պագուոշը գտնվում է Կանադայում) կոնֆերանսները։ 1957 թվականի հուլիսին, ամերիկյան արդյունաբերող և հասարակական գործիչ Սայրուս Իտոնի նախաձեռնությամբ, տեղի ունեցավ առաջին կոնֆերանսը, որտեղ ստեղծվեց ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի հինգ գիտնականներից բաղկացած մշտական կոմիտե։ Անհրաժեշտության դեպքում կոմիտեն հրավիրում է կոնֆերանսներ տարբեր երկրների գիտնականների մասնակցությամբ։ Այդ կոնֆերանսներում քննարկվում են զինաթափման և միջազգային անվտանգության հետ կապված կարևորագույն հարցեր։ 1962 թվականի սեպտեմբերին Լոնդոնում գումարվեց Պագուոշյան 10-րդ կոնֆերանսը, որին մասնակցում էին երեսունհինգ երկրների գիտնականներ։ Քննարկվում էր «Գիտությունը և միջազգային պրոբլեմները» թեման։ Մասնակիցները բոլոր երկրների գիտնականներին կոչ արեցին կրկնապատկել իրենց ջանքերը զինաթափումն իրականացնելու և կայուն խաղաղություն հաստատելու գործում։

Վերջին տարիներին խաղաղության շարժումը համալրվել է նոր ուժերով, ԱՄՆ-ում, Կանադայում, Իտալիայում, Հոլանդիայում, Արևմտյան Գերմանիայում, Սկանդինավյան երկրներում ստեղծվել են նոր խմբեր ու հոսանքներ, որոնք հանդես են գալիս միջուկային պատերազմի դեմ։ Հակապատերազմական այդ ուժերը կազմակերպում են «Հակաատոմային երթեր», «Նստած ցույցեր» և այլն։

Խաղաղության պայքարին ավելի գործուն մասնակցություն են ցուցաբերում մասսայական դեմոկրատական կազմակերպությունները, կոոպերատիվ միությունները, գյուղացիական միավորումները, արհմիութենական կազմակերպությունները։ Այդ շարժմանը սկսել են հարել նաև կրոնական որոշ հոսանքներ։

Սակայն պետք է նշել, որ կապիտալիստական աշխարհում խաղաղության շարժումն իր բնույթով և զարգացման աստիճանով տարբեր երկրներում նույնը չէ։ Այն ունի իր օրինաչափությունները և յուրահատուկ դրսևորումները։ Օրինակ, Ճապոնիայում, որն առաջինն է կրել ատոմային ռումբի արհավիրքները, խաղաղության պայքարը ինտենսիվ բնույթ ունի և տարբերվում է ԱՄՆ-ում ու Կանադայում ծավալված շարժումից։ Դա բացատրվում է ամենից առաջ այն բանով, որ այդ երկրների տերիտորիաները երկար ժամանակ զերծ են մնացել պատերազմների աղետներից, դրանց ժողովուրդներն անմիջականորեն չեն զգացել պատերազմի սարսափները։ Այդ պատճառով էլ խաղաղության շարժումն այստեղ չունի այն թափն ու հզորությունը, ինչպես Ճապոնիայում կամ այլ երկրներում։ Իսկ այնպիսի երկրներում, ինչպիսիք են Ֆրանսիան ու Իտալիան, որտեղ բացի վերոհիշյալ հանգամանքից, գործում են կոմունիստական մարտական պարտիաներ, խաղաղության պայքարը լայն թափ ու ծավալ է ստացել, ընդգրկելով բնակչության լայն խավերին։

Խաղաղության շարժումը իր բնույթով ինտերնացիոնալ է, սակայն տարբեր երկրներում այն ունի ազգային առանձնահատկություններ, զարգացման յուրահատուկ պայմաններ։ Այսպես, օրինակ, Ավստրիայի խաղաղության կոմիտեն զինաթափման համար մասսաների պայքարը կապում է չեզոքություն պահպանելու հետ։ Ֆրանսիայի խաղաղության մարտիկները հանդես են գալիս արևմտագերմանական միլիտարիզմի, Ադենաուեր—դը Գոլ կոալիցիայի դեմ, Սկանդինավյան երկրների խաղաղության կողմնակիցները շահագրգռված են, որպեսզի Բալթիկ ծովը դառնա «խաղաղության ծով»։ Արևմտյան Գերմանիայում պայքարում են բունդեսվերը ատոմային զենքով զինելու դեմ։ Գաղութակալությունից ազատագրված Ասիայի ու Աֆրիկայի երկրների խաղաղության պայքարը սերտորեն առնչվում է ազգային-ազատագրական և հակաիմպերիալիստական պայքարի հետ։ Սակայն այդ ամենը մեկ ամբողջի բաղկացուցիչ մասերն են։ Մի՞թե բոլոր ազգերի համար ձեռնտու չէ, որ Բալթիկ ծովը դառնա «խաղաղության ծով», կամ Բալկանները, Կենտրոնական և Հյուսիսային Եվրոպան ու Հեռավոր Արևելքը՝ ատոմազերծ գոտիներ։ Ակնհայտ է, որ խաղաղության շարժման ազգային ծրագրերը փոխադարձաբար շաղկապված են համաշխարհային շարժման ծրագրի հետ և լրացնում են վերջինին։

Խաղաղության պահպանման համար մեծ նշանակություն ունի կապիտալիստական երկրների ժողովրդական մասսաների գիտակցականության աճը։ Անշուշտ, մասսաներն այժմ այն չեն, ինչ, ասենք, երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին, նրանք անհամեմատ ավելի գիտակից են դարձել՝ ըմբռնել են միջուկային պատերազմի բնույթը։ Ժամանակակից զենքն ավերիչ այնպիսի ուժ ունի, որ այլևս ջնջվել են «թիկունք» և «ռազմաճակատ» նախկին հասկացությունները։ Ո՛չ օվկիանոսները, ո՛չ ռմբապաստարանները մարդկանց չեն փրկի կործանումից։ Այս դառն ճշմարտությունը հասկացել են ո՛չ միայն լայն զանգվածները, այլև կապիտալի որոշ գործարար շրջանների ողջախոհ ներկայացուցիչներ։ Եթե անցյալ պատերազմների ժամանակ նրանք առասպելական շահույթներ էին կորզում, ապա արդի ջերմամիջուկային դժոխքը նրանց ո՛չ թե շահույթ, այլ կործանում կբերի։ Ուստի նրանք արդեն գիտակցում են, որ ապրելու համար նախ անհրաժեշտ է ապահովել խաղաղություն։

Բայց, չնայած այս ամենին, կապիտալի երկրներում դեռևս շատ կան մարդիկ, որոնք չեն մասնակցում, կամ պասիվություն ու անտարբերություն են ցուցաբերում խաղաղության պայքարի հանդեպ։ Դա, իհարկե, բացասաբար է անդրադառնում ընդհանուր շարժման վրա։

Նման իրադրության մեջ խաղաղության համար պայքարող բոլոր կազմակերպություններն ու միությունները ավելի ու ավելի են համոզվում, որ իրենց նպատակներին հասնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է գործողությունների միասնություն։ Պայքարի փորձը ցույց է տալիս, որ խաղաղասեր ուժերը չպետք է փոշիացնեն, ջլատեն իրենց շարքերը, դա վնասում է խաղաղության ընդհանուր գործին։ Ահա թե ինչու խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժումը աշխատում է ըստ ամենայնի համագործակցել բոլոր կազմակերպությունների ու խմբերի հետ, միասնաբար հանդես գալ ու ճիշտ հունով տանել դրանց պայքարը։ Բերենք մի օրինակ։

1962 թվականի հունվարին Ֆլորենցիայում խաղաղության իտալական կողմնակիցների հան-

սափելի չեն։ Բայց. ինչպես նշում է Ն. Ս. Խրուշչովը, չկա նաև խաղաղության ճակատագրական անխուսափելիություն։ Չի կարելի ձեռքերը ծալած նստել ու սպասել, որ իմպերիալիստները, պատերազմի ջատագովներն իրենց հոժար կամքով զինաթափվեն ու դիմեն խաղաղության։ Ամեն ինչ կախված է ժողովրդական մասսաներից, խաղաղության համար նրանց վճռական ու համառ պայքարից, նրանց ճնշումից։ Ովքեր կամենում են ապրել, պետք է գործեն, հաստատակամորեն պահանջեն արգելել միջուկային զենքը, հասնեն ընդհանուր զինաթափման։

Ահա այս նշանաբանով անցավ 1962 թվականի հուլիսին Մոսկվայում կայացած ընդհանուր զինաթափման և խաղաղության համաշխարհային կոնգրեսը։ Դա խաղաղության կողմնակիցների պայքարի վճռականության ստուգատեսն էր, որին մասնակցում էին 121 երկրներից եկած մոտ 2800 պատվիրակներ։

Սպառազինությունների մրցավազքի փոխարեն սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ մրցություն և ընդհանուր ու լրիվ զինաթափում՝ որոտընդոստ հնչում էր Մոսկվայի կոնգրեսի դահլիճից։ Այժմ համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունն այնպիսին է, որ ռեալ հնարավորություններ են ստեղծվել ժողովուրդների այդ նվիրական երազանքը իրականացնելու համար։ «Մարդկությունը,— ասել է Կ. Մարքսը,— միշտ առաջադրում է իրեն լոկ այնպիսի խնդիրներ, որ ինքը կարող է լուծել, որովհետև մոտիկից քննելով, միշտ պարզվում է, որ հենց ինքը՝ խնդիրը ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն գոյություն ունեն կամ, գոնե, գտնվում են լինելիության պրոցեսում»։ Արտահայտելով միլիոնավոր մարդկանց կամքը, կոնգրեսն աշխարհի ժողովուրդներին հղած Ուղերձում հաստատակամորեն հայտարարեց, որ զինաթափումը ոչ միայն կենսականորեն անհրաժեշտ է, այլև հնարավոր։ «Երեկ այն մարդկության լավագույն մտածողների երազանքն էր։ Այսօր զինաթափումը դարձել է գործնական խնդիր, որի լուծման համար պետք է պայքարի մեզնից յուրաքանչյուրը»։ Բայց այդ կարևոր պրոբլեմը լուծելու համար խաղաղության կողմնակիցները պետք է անցնեն ակտիվ, հարձակողական գործողությունների, որպեսզի ռազմամոլներին հարկադրեն ունկնդրել ժողովրդի հրամայական ձայնին։ Անշուշտ, մեկուսացված բողոքի ցույցերն այժմ անբավարար են մարդկության այդ հումանիստական իղձը կենսագործելու համար։

Կոնգրեսի ամբիոնից դիմելով խաղաղության կողմնակիցներին, Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Թող որ ընդհանուր զինաթափման և խաղաղության համաշխարհային շարժումն աճի օրավուր, շաբաթ առ շաբաթ։ Թող որ ոտքի ելնեն բոլոր ժողովուրդները և իրենց ակտիվ գործողություններով փակեն համաշխարհային պատերազմի ճանապարհը, հասնեն զինաթափման։ Որքան ստվար լինի խաղաղության մարտիկների բանակը, այնքան այն ավելի ակտիվ կլինի, այնքան արագ հասած կլինենք ընդհանուր և լրիվ զինաթափման»։

Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

---

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

Տեղեկանք

1789—1794 թթ. ֆրանսիական բուրժուական ռևոլյուցիայի ընթացքում Ազգային կոնվենտի ընդունած դեկրետներով (1792 թ. սեպտեմբերի 21-ին և 22-ին) Ֆրանսիայում վերացվեց թագավորական իշխանությունը և հռչակվեց ֆրանսիական Առաջին ռեսպուբլիկան: 1804 թ. Նապոլեոնը Ֆրանսիան հռչակեց կայսրություն, որով ավարտվեց Առաջին ռեսպուբլիկայի անկումը:

Ֆրանսիական Երկրորդ ռեսպուբլիկան ստեղծվեց 1848 թվականի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի ժամանակ, երբ տապալվեց հուլիսյան միապետությունը (1830—1848 թթ.): 1851 թ. դեկտեմբերի 2-ին կատարվեց պետական հեղաշրջում և հաստատվեց Լուի-Նապոլեոն Բոնապարտի դիկտատուրան, որը կոչվեց «Երկրորդ կայսրություն»:

1870 թ. սեպտեմբերի 4-ին Փարիզի ապստամբ բանվորների պահանջով հռչակվեց Երրորդ ռեսպուբլիկան, որի կոնստիտուցիան ընդունվեց 1875 թ.: 1940 թ. հունիսին Ֆրանսիայի չօկուպացված տերիտորիայում ստեղծվեց «Վիշիի ֆաշիստական ռեժիմը»: Երրորդ ռեսպուբլիկան դադարեց գոյություն ունենալ:

Ֆաշիստական օկուպանտներից երկիրն ազատագրվելուց հետո, 1946 թ. նոյեմբերի 13-ին հաստատվեց նոր կոնստիտուցիան: Իրավաբանորեն ձևակերպվեց Չորրորդ ռեսպուբլիկան:

1958 թվականի մայիսի 13-ին իշխանության գլուխ անցավ գեներալ դը Գոլը: Վերացվեցին բուրժուական պառլամենտարիզմի տրադիցիոն ինստիտուտները: 1958 թ. նոյեմբերի 4-ին գործողության մեջ դրվեց նոր կոնստիտուցիան, հաստատվեց դը Գոլի անձնական իշխանությունը: Այդ ռեժիմը կոչվում է Հինգերորդ ռեսպուբլիկա:

---

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ՀԱՋՈՂ Է

Կոլեկտիվիզմը ծագել է սոցիալիստական արտադրական հարաբերություններից նույնպիսի անհրաժեշտությամբ, ինչպիսի անհրաժեշտությամբ ինդիվիդուալիզմը՝ մասնավոր սեփականատիրական հարաբերություններից։ Ժամանակից սոցիոլոգիական կոնցեպցիաների բախման մեջ ուշադրությունը բևեռվում է այն բանի վրա, թե այդ սկզբունքներից որն է ամենից ավելի մեծ չափով համապատասխանում անհատի բնությանը, նրա շահերին ու նպատակներին։ Դրա շնորհիվ «անհատ-հասարակություն» հին, բայց միշտ նոր պրոբլեմը փոխադրվել է ինդիվիդուալիզմի և կոլեկտիվիզմի հարաբերակցության բնագավառը, որոնք փաստորեն պաշտպանում են երկու հակադիր հասարակական կարգ՝ կապիտալիզմը և սոցիալիզմը։ Ձգտելով բազմակողմանիորեն ուսումնասիրել այդ հարաբերակցությունը, Ռ. Սամսոնովը՝ վերջերս լույս տեսած իր մենագրության 1 մեջ նպատակ է դրել քննության առնել երեք մեծ պրոբլեմ. ինդիվիդուալիզմը, նրա սոցիալական արմատները և դասակարգային էությունը. կոլեկտիվիզմի առաջացումը, զարգացումն ու ամրապնդումը սոցիալիստական գաղափարախոսության ձևավորման ժամանակաշրջանում և, վերջապես, մարդկանց գիտակցության մեջ ինդիվիդուալիզմի մնացուկների հաղթահարման ուղիները սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու ժամանակաշրջանում։

Բացահայտելով մարդկային անհատի «վաղեմի» ինդիվիդուալիզմի մասին բուրժուական հետազոտողների պնդումների կեղծությունը, հեղինակը ցույց է տալիս, որ իրականում նախնադարյան-համայնական կարգի ժամանակ մարդը իրեն չէր պատկերացնում որպես համայնքից մեկուսացած առանձին անհատ։ Այստեղ հայտնի չէր սոցիալական ինդիվիդուալիզմը. այն ծագեց զգալիորեն ավելի ուշ, երբ օբյեկտիվ օրենքները հանգեցրին դասակարգերի ձևավորմանն ու բևեռացմանը, և երբ հասունացավ ունևոր խավերի շահերի գաղափարական արտահայտման անհրաժեշտությունը։

Սոցիալ-տնտեսական ֆորմացիաների հաջորդական փոփոխման համառոտ ուրվագիծը, ինչպես այդ անում է հեղինակը, համոզում է այն բանում, որ ինդիվիդուալիզմը չի փոխել իր էությունը, անփոփոխ կերպով պաշտպանելով շահերի բարոյականությունը, հետևողականորեն որպես գաղափարական զենք ծառայելով ստրկատիրական արիստոկրատիայի, ֆեոդալական վերնախավի, կապիտալիստների դասակարգի ձեռքում։ Սեփականատիրոջ բարոյական գնահատման մեջ ինդիվիդուալիզմը արդարացնում էր բռնությունը, բարոյականության գազանային գծերը, ամեն բանից բարձր դասելով հասարակական շահերն արհամարհող անհատին (էջ 9)։

Եթե հեղինակը մինչև վերջ հետամուտ լիներ այդ բարոյականության ակունքներին, նա ցույց կտար, որ ինդիվիդուալիզմի գազանային գծերը միաժամանակ այն նորմերի վերածնունդն էին, որ մերժել էր դեռ հնադարյան համայնական կազմակերպությունն իր լինելիության ընթացքում։ Այստեղ մարդը, որոշ առումով ազատվելով բիոլոգիական օրենքների գործողությունից և թևակոխելով սոցիալական օրենքների գործողության ոլորտը, համայնքի ներսում նախնադարյան հավասարությանն անցնելուց առաջ պետք է ազատվեր գազանային ինդիվիդուալիզմից։ Դրա հետևանքով այն, ինչ համայնքը ինքնապահպանման նպատակով հաղթահարեց իր սովորությունների, տրադիցիաների և օրենքների ուժով, պատմական նոր էտապում արտադրության միջոցների մասնավոր սեփականության հասարակությունն այն դարձրեց մորալի սկզբունք, իսկ կապիտալիզմի օրոք «շարժման մեջ դրեց,— ինչպես Էնգելսն էր ասում,— մարդկանց ամենաստոր ձգտումներն ու կրքերը և դրանց զարգացրեց ի վնաս մնացած բոլոր սաղմերի»։

Հեղինակը չի շոշափում այդ մոմենտները, որոնք ավելի լայնորեն են բացահայտում երկու սկզբունքների փոխադարձ պայքարի սկզբնական էտապները, բայց, այնուամենայնիվ, նա բավական լրիվ ցույց է տալիս ինդիվիդուալիստական հարաբերությունների իսկական էությունը, որոնք առանձնապես ցցուն կերպով են դրսևորվում կապիտալիզմի ժամանակ։

---

1 Ռ. Սամսոնով, Կոմունիզմն ընդդեմ ինդիվիդուալիզմի։ Հայպետհրատ, Երևան, 1962, 186 էջ։

Կապիտալիստական հարաբերությունների զարգացման իրական պատմությունից վերցրած փաստերով հեղինակը մերժում է ինդիվիդուալիզմի՝ որպես «համամարդկային» իդեալի մասին բուրժուական ջատագովների պնդումները։ Վարդագույն գաղափարների դարաշրջանը, երբ երիտասարդ բուրժուազիայի մտածողները որպես կենտրոնական խնդիր առաջ էին քաշում անհատի ազատագրումը, նրա ազատ զարգացումն ու շահերի բավարարումը, փոխարինվեց հասարակության ներսում դասակարգային հակասությունների սրմամբ և միևնույն բուրժուազիան սկսեց արմատավորել ինդիվիդուալիզմի տեսության առավել ռեակցիոն կողմերը (էջ 28)։ Ուստի պատահական չէ, որ խորացող դասակարգային հակամարտության, սոցիալիստական շարժման և պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի ոլորտում XIX դարի և XX դարի սկզբի ինդիվիդուալիզմը դրսևորեց նոր գծեր, ավելի թշնամական դարձավ սոցիալիզմի և պրոլետարական կոլեկտիվիզմի նկատմամբ։ Ի դեպ, ինդիվիդուալիզմի պատմական էվոլյուցիայի այս դրույթի վրա անհրաժեշտ է կանգ առնել։

Հեղինակը գտնում է, որ ներկա դարի սկզբում ինդիվիդուալիզմի փիլիսոփայական քարոզիչները, անընդունակ լինելով նոր փաստարկներ գտնել հօգուտ այդ մորալի, կրկնում են միայն հին ճշմարտությունները, ինդիվիդուալիզմը կորցնում է իր փայլը, նա գունազրկվում է և կանգ առնում, կորցնելով հետագա զարգացման ունակությունը (էջ 33)։

Այդպե՞ս է արդյոք դա։ Ամեն անգամ հանդես գալով սեթևեթ զգեստավորումներով, ինդիվիդուալիզմն անփոփոխ կերպով քարոզում է միևնույն հակադրումը— անհատը՝ կոլեկտիվին, մարդը՝ մասսային, աստվածացնելով անհատին, որը ազատ է հասարակության հանդեպ պարտքից և բարոյական պատասխանատվությունից։ Եվ այս բանը նշում է ինքը՝ հեղինակը։ Բայց բուրժուազիան այսօր էլ մորալի իր «տեսությամբ» ձգտում է ամեն կերպ ժխտել դասակարգային պայքարը, քարոզել ապոլիտիզմ, փախուստ տալով իրականությունից և այլն։ Այս ամենը կատարում է ինդիվիդուալիզմի փիլիսոփայությունը, որն ամենևին չի դիմում դարի սկզբի թառամած գաղափարներով իր պոստուլատների փաստարկմանը։ Պատահական չէ, որ իր թեզիսը հաստատելու համար հեղինակը դիմում է Գորկուն և Լունաչարսկուն (մասնավորապես Ա. Վ. Լունաչարսկու «Քաղքենիություն և ինդիվիդուալիզմ» գրքին, որը հրատարակվել է 1923 թվականին)։ Հեղինակը չէր կարող չգիտենալ, որ երկու տարի հետո Զ. Ֆրեյդը հանդես եկավ մի գրքով [1], որի մեջ կարելի էր գտնել Ու. Ջեմսի փիլիսոփայության տրամաբանական ավարտումը։ Այդ գրքի շնորհիվ ինդիվիդուալիստական փիլիսոփայությունը միացավ իռացիոնալիզմին, ստանալով նոր գծեր։ Վերջապես, վերջին երեք-չորս տասնամյակը բուրժուական Եվրոպայում ծնեց «գոյության փիլիսոփայությունը» (էկզիստենցիալիզմը), որը օգտագործում է ռազմատենչ ինդիվիդուալիզմը և, մերժելով հասարակական շարժման օրինաչափ բնույթը, ջանում է մարդկանց արարքները բացատրել որպես նրանցից ամեն մեկին առանձին բնության կողմից կանխորոշված։

Ճիշտ է, խոսելով ինդիվիդուալիզմի դրսևորման ոլորտների մասին (գլ. 1, § 5), հեղինակը այլ բնագավառների կողքին հիշատակում է նաև այդ «գոյության փիլիսոփայությունը», հաճախ քննադատության ենթարկելով նրա ներկայացուցիչներին։ Բայց ժամանակակից իմպերիալիստական Արևմուտքի ինդիվիդուալիզմի բնութագրումը ռեակցիոն փիլիսոփայական սիստեմների ամենից ավելի էական կողմերը մատնանշելուց հեռու չի գնում (գլ. 1, § 4), և դա ցավալի կերպով անդրադարձել է պրոբլեմի տվյալ ասպեկտի լուսաբանման վրա։

Գրքում զգալի տեղ է հատկացված պրոլետարական, սոցիալիստական կոլեկտիվիզմի ձևավորմանը, նրա առանձնահատկություններին և փոխհարաբերություններին, որոնք աշխատավորական մասսաների մեջ մշակել են նոր գիտակցություն և հոգեբանություն, որոնց հիման վրա հաստատվել են նոր հարաբերություններ անհատի և հասարակության միջև։ Ամբողջ երկրորդ բաժինը նվիրված է հենց այդ հարցերին։

Գրքում համոզիչ կերպով ցույց է տրված, որ մարդը չի կարող գոյություն ունենալ, զարգանալ և իրեն որպես անհատ դրսևորել հասարակությունից դուրս (էջ 68)։ Բացահայտելով կոլեկտիվիզմի սոցիալական արմատները, հեղինակը նորից է դիմում պատմությանը։ Հասարակության ներսում որակական փոփոխությունների դիալեկտիկական բարդ պրոցեսում հեղինակը հաջողությամբ նկատում է երկու հակադիր երևույթների միասնությունը (էջ 64)։ Մի կողմից դասակարգերի բևեռացումը հանգեցրեց սոցիալական անջատվածության և, համապատասխանորեն, ինդիվիդուալիզմի երևան գալուն, մյուս կողմից, նույն գործոնները պայմանավորեցին ճնշված ստորին խավերի ներքին ուժերի համախմբումը, հանգեցրին կոլեկտիվիզմին, որին վիճակված էր հետագայում զարգանալ և դառնալ բարձրագույն, պրոլետարական կոլեկտիվիզմ։

Հենց այստեղ էլ (էջ 75) հեղինակը բացահայտում է Մարքսի դրույթը շահագործողական դասակարգերին հատուկ կոլեկտիվիզմի պատրանքային բնույթի մասին, նշելով ազատության և

[1] З. Фрейд, Психология масс и анализ человеческого «Я», М., 1925.



պատասխանատվության այն միասնության բացակայությունը, որոնք բնութագրում են սոցիալիստական կոլեկտիվիզմը։ Ցավոք սրտի, հեղինակը լռությամբ է անցել վաղ քրիստոնեական համայնքների կոլեկտիվիզմի հարցի կողքից, որը դարեր շարունակ ծառայում էր որպես քրիստոնեություն ընդունած ժողովուրդների հասարակական կյանքի լավագույն կազմակերպման իդեալ[1], իսկ մեր օրերում եռանդագին կերպով գունազարդվում է քրիստոնեական սոցիալիզմի հետևորդների կողմից։ Այս շտրիխի առկայությունն է՛լ ավելի ցցուն կդարձներ սովետական կոլեկտիվիզմի, որպես կոլեկտիվիստական հարաբերությունների բարձրագույն տիպի էությունը։

Գլխավորը, որի վրա բևեռվում է ընթերցողի ուշադրությունը, դա մարդու անձի հարցն է սոցիալիստական հասարակության մեջ։ Դեռևս Մարքսը և Էնգելսն էին սահմանել որպես ամենից ավելի ընդհանուր սոցիոլոգիական օրենք, որ անհատի իսկական հոգեկան հարստությունը ամբողջապես կախված է նրա իրական հարաբերությունների հարստությունից։ Հենվելով սկզբունքային այս դրույթի վրա, հեղինակը ձգտում է ավելի լրիվ արտահայտել այն ճշմարտությունը, որ միայն կոլեկտիվն է իրականացնում անձնական ազատությունը և հնարավորություն տալիս բազմակողմանիորեն զարգանալու անհատին, որն այստեղ հարստանում է հասարակական հետաքրքրությունների ամբողջ բազմազանությամբ։ Սոցիալիզմը հենց նրանով է տարբերվում հասարակական մյուս սիստեմներից, որ սոցիալիստական համակեցության կանոնները, անհատի և հասարակության փոխհարաբերության նորմերը համապատասխանում են ամբողջ ժողովրդի, ամբողջ սոցիալիստական կոլեկտիվի շահերին։ Մեր կյանքից քաղած օրինակներով ցույց է տրվում, որ անհատի հոգեկան զարգացման հոգսը ամբողջ հասարակության հոգսն է, որովհետև միայն սոցիալիզմն է տնտեսական, քաղաքական և կուլտուրական պայմաններ ստեղծում մարդկանց միջև իսկական մարդասիրական հարաբերությունների համար, կոլեկտիվիզմի և փոխադարձ աջակցության սկզբունքի տիրապետության համար։

Կոլեկտիվիզմին նվիրված բաժինն ավելի համոզիչ է և դա բացատրվում է հավանորեն այն բանով, որ ուշադրությունը կենտրոնացնելով պրոբլեմի քաղաքական և էթիկական կողմի վրա, հեղինակն իր աշխատության մեջ օգտագործել է ինչպես հայրենական, այնպես էլ արտասահմանյան սոցիոլոգիայի մի շարք օրիգինալ աշխատություններ, թեև այստեղ կարելի էր նշել այն, որ չկան ավելի ուշ շրջանի աշխատանքների վկայակոչումներ։

Ամենից ավելի մեծ հետաքրքրություն է ներկայացնում գրքի վերջին բաժինը, որը նվիրված է անցյալի մնացուկների և կոմունիստական դաստիարակության ռեալ ուղիների պրոբլեմին։ Ժամանակակից պայմաններում պարտիան իր գլխավոր խնդիրները տեսնում է այն բանում, որ ստեղծի կոմունիզմի նյութական բազա, սոցիալիստական հասարակական հարաբերությունները վերափոխի կոմունիստականի և բոլոր աշխատավորներին դաստիարակի բարձր գաղափարայնության ոգով, հասնի արդար և ամենից կատարյալ հասարակական կարգի կառուցման։ ՍՄԿՊ Ծրագրում նոր անհատի ձևավորման պրոբլեմը բարձրացված է մինչև կոմունիստական շինարարության ամենագլխավոր խնդիրներից մեկի մակարդակին։ Այդ խնդիրների լույսի տակ հեղինակը ուրվագծում է նոր անհատի ձևավորման ամբողջ բարդ պրոցեսը՝ հնի դեմ նորի անընդհատ պայքարի ֆոնի վրա։

Գրականության մեջ շատ հաճախ այս պրոբլեմը դիտվում է լոկ գիտակցականության աճման պլանում, այսինքն՝ գերազանցապես իբրև էթիկական, քաղաքական և հոգեբանական պրոբլեմ, այն ժամանակ, երբ անհատի ձևավորումը որպես պրոցես ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը, ընթանալով հակասությունների, կոնֆլիկտների և գիտակցության մեջ անցյալի մնացուկների հաղթահարման միջոցով։

Խոսելով նոր մարդու դաստիարակության մասին, հեղինակը կանգ է առնում աշխատանքի, որպես անհատի դաստիարակության որոշիչ պայմանի դերի վրա (գլ. III, § 6), ընդգծելով միաժամանակ կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժման բնույթը որպես զարգացած կոլեկտիվիզմի արտահայտություն, որի հաղթարշավը սկսվել է առաջին կոմունիստական շաբաթօրյակներից (էջ 145)։ Գիտության և տեխնիկայի նվաճումներով զինված մեր հասարակությունում աշխատանքն ընդունակ է ծառայելու և ծառայում է որպես մարդու հոգեկան ու ֆիզիկական ուժերի հետագա զարգացման աղբյուր։

Գրքի հեղինակը սկզբունքային ճիշտ դիրքից է ելնում հակահասարակական երևույթները լուսաբանելիս։ Նա չի սահմանափակվում անցյալի մնացուկների պահպանման օբյեկտիվ պատճառները մատնանշելով, այլ նա պարզաբանում է այն պայմանները, որոնք հեշտացնում կամ առաջ են բերում հակահասարակական արարքներ ու հայացքներ այս կամ այն անձանց մոտ։ Գրքի հեղինակը ընտրել է հենց այդ ուղին, հրաժարվելով ընդունված ստանդարտներից։ Բայց մի շարք տեղերում հեղինակի դրույթները վիճելի են թվում։ Հեղինակը գտնում է, օրինակ, որ անհատի կողմից կատարվող հանցանքի համար պատասխանատվությունն ընկնում է հասարակայնու-

[1] Այս մասին տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, О религии. М., 1955, стр.77—78.

ության արդյունք է թերթի այս էջը, ուր համոզիչ փաստերով ցույց է տրվում կոլեկտիվ դաստիարակության մեջ անհատական մոտեցման ուժը։ Մարդիկ ունեն տարբեր բնավորություններ, յուրահատուկ խառնվածք։ Մեկին պետք է սուր քննադատել, մյուսն ուղիղ ճանապարհի է գալիս հեղինակավոր մարդու ազդեցությամբ, համոզելու շնորհիվ։ Ձուլող ցեխի վարպետ Ս. Կնյազյանը, հավաքման ցեխի վարպետ Յ. Զատիկյանը և ուրիշներ հոգատարությամբ են շրջապատել երիտասարդներին, նրանց ներգրավել հանրօգուտ աշխատանքի մեջ։ Այդ դաստիարակության բովով անցած շատ երիտասարդների, օրինակ, Ս. Վահանյանին, Վ. Գազարյանին, Ժ. Զուրաբյանին այժմ մատով են ցույց տալիս և հիացմունքով խոսում նրանց մասին։

Նամակները կենդանի, չցամաքող աղբյուրներ են, յուրաքանչյուր նամակում արտացոլված են մարդկանց հույզերն ու ապրումները։ Նամակներ կան, որոնցում բարձրացվում են պետական կարևորություն ունեցող հարցեր։ Այդպիսին էր ինժեներ Հր. Ամիրբեկյանի նամակը, որտեղ նա գրում է քաղաքաշինության մի քանի կարևոր խնդիրների մասին։ Կիրովականն անընդհատ զարգացող արդյունաբերական քաղաք է, օրեցօր փոխվում է այն, ծավալվում, դուրս գալիս հին շրջանակներից։

Խոսելով կառուցումների, փողոցների կարգավորման գործում գոյություն ունեցող թերությունների մասին, հեղինակն իրավացիորեն նկատում է, որ ամեն ինչ պետք է անել պլանով, հաշվի առնել քաղաքի հեռանկարները։ «Կայծը» ապրիլի 15-ին հրապարակեց այս նամակը՝ դնելով այն ընթերցող հասարակայնության քննարկմանը։ Այդ նպատակով թերթը բացեց հատուկ բաժին՝ «Ինչպիսին ենք ուզում լինի Կիրովականը»։ Առաջինն այդ նամակին արձագանքեց № 3 միջնակարգ դպրոցի ուսուցիչ Գ. Պապյանը։ Մեզ մոտ երբեմն մոռացվում է գլխավորը, գրում է նա, կառուցել քաղաքը ո՛չ միայն այսօրվա, այլև ապագայի համար, որպեսզի ապագայի քաղաքացին նորը կառուցելու նպատակով ստիպված չլինի քանդել հինը։

Իր նամակում քիմիական գործարանի բանվոր Ս. Պողոսյանը առաջարկում է հասարակական ուժերով արհեստական լիճ կառուցել։ Շինանյութերի և իրերի կոմբինատի գլխավոր ինժեներ Յու. Մելիքսեթյանը առաջ է քաշում կոյուղու շինարարության հարցը, ինժեներ Գ. Աղաբաբյանը գտնում է, որ պետք է ավելի շատ կանաչապատել քաղաքը։ Երկու կարևոր խնդիր է առաջ քաշում ինժեներ Ա. Եսայանը. Կիրովականը գազիֆիկացվում է, արդեն բնական գազ են ստացել քիմ-կոմբինատը, բնակելի բազմաթիվ շենքեր։ Այսպիսով մեծ հնարավորություններ են ստեղծվում քաղաքը մաքրելու ծխից։ Պետք է լավ օգտագործել գազիֆիկացման առավելությունները։ Կիրովականի համար կենսական նշանակություն ունի ջուրը։ Քաղաքի աճման և ջրամատակարարման տեմպերը չեն համապատասխանում իրար։ Դանդաղում է Նովոսելցովո-Կիրովական ջրատարի շինարարությունը։



Ուրախալի է, որ «Կայծն» սկսել է ավելի ակտիվորեն միջամտել հարազատ քաղաքի կոմունիստական շինարարության գործերին։ Բայց թերթի աշխատանքներում դեռևս կան թերություններ. առանձին նյութերում տեղ են գտել ընդհանուր դատողությունները, ոչ կոնկրետությունը, որոնք գործին չեն օգնում։ Ահա մի օրինակ. հուլիսի 27-ին թերթը տպագրել է «Նորը գաղափարական աշխատանքում» վերտառությամբ հոդվածը, ուր միայն ընդհանուր հայտարարություններ կան, թե «Անցած ուսումնական տարում պրոպագանդիստները յուրաքանչյուր ուսումնասիրվող թեմա հմտորեն կապում էին ձեռնարկության արտադրական խնդիրների հետ...»։ Այս հայտարարությունից հետո թերթը դիմում է հանրահայտ շաբլոնին՝ «սակայն քաղաքական-մասսայական աշխատանքում դեռևս լուրջ թերություններ կան»։ Ո՛չ գովեստի, ո՛չ քննադատության դեպքում չկան օրինակներ ու փաստեր։ Այսպիսի ելույթներն, ինչպես ասում են, վրիպված կրակոցներ են։ Վերցնենք մի ուրիշ փաստ. «Ինչպիսին ենք ուզում լինի Կիրովականը» հետաքրքրական նամակաշարքից հետո ընթերցողները չիմացան, չտեսան արդյունքը, այն, թե ի՞նչ արձագանք գտան այդ հուզող հարցերը ռեսպուբլիկայի համապատասխան շինարարական-նախագծային հիմնարկներում։ Հենց այստեղ է, որ թերթը պետք է հանդես գա կազմակերպչի դերում։

Իր շուրջը համախմբելով հեղինակային ավելի մեծ կոլեկտիվ, թերթը պետք է ավելի խոր թափանցի քաղաքի բազմաբեղուն կյանքը, օգնի պարտիական կազմակերպություններին՝ ամրապնդելու այն նորն ու առաջավորը, որ ծնվում, զարգանում է կոմունիստական շինարարության առօրյայում։

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Հարց — Իջևանի շրջանի Խաշթառակ, Լուսաձոր և Ն. Աղդան գյուղերը միավորված են մեկ գյուղական Սովետում։ Գյուղական Սովետի գործկոմի նախագահը բնակվում է Խաշթառակ գյուղում և նույն գյուղի պարտկազմակերպության անդամ է։

Ինձ հետաքրքրում է այն հարցը, թե Լուսաձորի և Ն. Աղդանի պարտկազմակերպություններն իրավունք ունե՞ն լսելու նրա զեկուցումը և անելու համապատասխան առաջարկություններ, ինչպես նաև աշխատանքը չգլխավորելու համար նրան ենթարկելու պարտիական տույժի։

Հ. ԱՅՎԱԶՅԱՆ
Իջևանի շրջանի Լուսաձոր գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ

Պատասխան — Լուսաձորի և Ն. Աղդանի սկզբնական պարտկազմակերպությունները կարող են լսել և քննարկել միացյալ գյուղսովետի գործկոմի նախագահի զեկուցումը և անել համապատասխան առաջարկություններ՝ գյուղսովետի գործունեությունը բարելավելու նպատակով։ Բայց նրանցից և ոչ մեկը իրավասու չէ նրան ենթարկել պարտիական տույժի, քանի որ նախագահը Խաշթառակի սկզբնական պարտիական կազմակերպության անդամ է։ Վերոհիշյալ պարտիական կազմակերպությունները, անհրաժեշտության դեպքում, կարող են հարց բարձրացնել Խաշթառակի սկզբնական պարտկազմակերպության առաջ՝ պարտիական պատասխանատվության ենթարկելու նրան։

Հարց — Անիի շրջանի Մարալիկ գյուղի բնակիչ Վ. Կյուրեղյանը 1962 թվականի սկզբին զորացրվել է Սովետական Բանակի շարքերից և մարտ ամսից աշխատում է էլեկտրաշահագործման գրասենյակում։ Ընկ. Կյուրեղյանը բանակում ընդունվել է ՍՄԿՊ անդամության թեկնածու։ Ներկայումս նա ժամկետանց թեկնածու է և հիմնարկում կոմունիստներից ոչ ոք դեռևս չի ճանաչում նրան առնվազն մեկ տարվա համատեղ արտադրական ու հասարակական աշխատանքից։ Ինչպե՞ս վարվել։

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
ՀԿՊ Անիի շրջկոմի հաշվառման սեկտորի վարիչ

Պատասխան — Սովետական Բանակից զորացրված ՍՄԿՊ անդամության թեկնածուների հարցը լուծելիս պարտիական կազմակերպությունները յուրաքանչյուր դեպքում պետք է ցուցաբերեն առանձնակի մոտեցում, հարկ եղած դեպքում օգնեն նրանց՝ ձեռք բերելու երաշխավորագրեր (զինվորական մասից կամ այն կոմունիստ ընկերներից, որոնք ճանաչում են տվյալ անձնավորությանը համատեղ աշխատանքից մինչև նրա բանակ մեկնելը և այլն)։ Եթե ժամ-

կետանց պարտթեկնածուն իրեն լավ է դրսևորում աշխատանքում և արժանի է ՍՄԿԿ անդամ ընդունվելու, ապա պետք է որոշ ժամանակ սպասել։

Հարց — ՍՄԿԿ Կանոնադրության 25-րդ պարագրաֆում ասված է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները կարող են անընդմեջ ընտրվել ոչ ավելի, քան երկու ընտրաշրջան, միաժամանակ նշվում է, որ նրանք կարող են ընտրվել նաև ավելի երկար ժամանակով, երբ այդ պահանջում է քվեարկությանը մասնակցած կոմունիստների երեք քառորդը։ Սա հասկանալի է։ Բայց պատահում է և այսպես. կոմունիստներից մեկը, որն անընդմեջ երկու ընտրաշրջան ընտրվել է սկզբնական կազմակերպության քարտուղար, երրորդ անգամ չի ընտրվել։ Սակայն նորընտիր քարտուղարը մի քանի ամիս աշխատելուց հետո տեղափոխվում է այլ աշխատանքի. պարտկազմակերպությունը այդ պատճառով վերստին ընտրում է նախկին քարտուղարին, որն աշխատում է մինչև առաջիկա ընտրությունները։ Ինձ հետաքրքրում է, թե այս կարճատև ընդմիջումը կարելի՞ է տվյալ քարտուղարի համար երրորդի փոխարեն համարել առաջին ընտրաշրջան։

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿԿ Անիի շրջկոմի հրահանգիչ

Պատասխան — Տվյալ պարագայում սկզբնական պարտկազմակերպության քարտուղարի համար վերջին ընտրությունը պետք է դիտել որպես առաջին ընտրաշրջան և, ՍՄԿԿ Կանոնադրության համապատասխան, պարտիական կազմակերպությունը նրան կարող է ընտրել նաև երկրորդ անգամ։ Բացի դրանից, պարտիական կազմակերպություններին իրավունք է վերապահվում պարտիական ղեկավար օրգանների կազմում ընտրել նաև այս կամ այն աշխատողին առավել երկար ժամկետով՝ նկատի ունենալով վերջինիս քաղաքական ու գործարար հատկանիշները։




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2--56—92

ՎՖ 10804 Պատվեր 2658 Տիրաժ՝ 9150 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 27/X 62 թ.

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։


# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼՈՂԱՑՈՂ ՄՈՏՈՑԻԿԼԵՏ

Կիևի մոտոցիկլետային գործարանի մի խումբ ինժեներներ մոտոցիկլետի սովորական սայլակի փոխարեն ստեղծել են յուրատեսակ սայլակ։ «Կ—750» մոտոցիկլետին կցվում է պլաստմասսայից պատրաստված նավակ, որը կարելի է հեշտությամբ անջատել մոտոցիկլետից։ Ջրային սպորտի սիրահարների համար սա, իրոք, հիանալի նվեր է։

Այժմ փորձեր են կատարվում մոտոցիկլետի երկու կողմերում փոքրիկ նավակներ ամրացնելու միջոցով մեքենայի կայունությունը պահպանելու, շարժունակությունն ավելացնելու և ջրային ուղիներում այն հուսալի դարձնելու համար։

## ՄԱՐԴՈՒ ՁԱՅՆԸ՝ ԷՆԵՐԳԻԱՅԻ ԱՂԲՅՈՒՐ

ԱՄՆ-ում ստեղծված է ոչ սովորական ռադիոհաղորդիչ, որը ձայնային տատանումները վեր է ածում էլեկտրական էներգիայի։ Ռադիոհաղորդչի սնման աղբյուրը միայն մարդկային ձայնն է։ Փորձարկված ռադիոհաղորդիչները ռադիո-ազդանշանները հաղորդել են մոտ 100 մետրի վրա։

Գյուտարարներն այժմ աշխատում են հաղորդումների շառավիղը 4 կիլոմետրի հասցնել։ Ռադիոհաղորդիչը լայնորեն կօգտագործվի այնտեղ, ուր դժվար կլիներ մարտկոցներ գտնել։

## ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿ

Տոկիոյում ստեղծված է յուրատեսակ ներկ, որը ոչ մի փոփոխության չի ենթարկվում նույնիսկ ամենաբարձր՝ 3500 աստիճան ջերմության պայմաններում։ Այդ ներկով ներկված պողպատե լարը շիկացվել է 1500 աստիճան, սակայն այն ոչ միայն չի հալվել, այլև բոլորովին փոփոխության չի ենթարկվել։

## ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ ՁԵՌՔ

Այժմ բոլոր նավերում բեռնումն ու բեռնաթափումը մեքենայացված են։ Սակայն նավախորշից բեռները վեր բարձրացնելու աշխատանքը մինչև վերջերս էլ շատ ժամանակ և ուժ էր պահանջում։ Հարկավոր էր ելք գտնել բեռնողների ու բեռնաթափողների աշխատանքը թեթևացնելու համար։ Այդ մասին շատ խորհեցին, բազմաթիվ փորձեր արեցին Լենինգրադի առևտրական նավահանգստի մի խումբ աշխատողներ՝ փականագործ Կ. Լուկաշունսը, էլեկտրատեխնիկ Ա. Ռասսան և ուրիշներ։ Նրանց երկարատև պրպտումները պսակվեցին հաջողությամբ. ստեղծվեց մեքենայական ձեռք, որն առանց դժվարության բավական հմտորեն նավախորշից վեր է բարձրացնում բեռները։

Նոր հարմարանքը, որը նման է փոքրիկ էքսկավատորի, գտնվում է նավախորշում, շարժունակ է և մոտ 30 վայրկյանում վեր է բարձրացնում մոտ 400 կիլոգրամ բեռ, մեկ ժամում՝ 48 տոննա։ Նավի բեռնաթափման այնքան դժվարին աշխատանքը այժմ կատարում է մեքենայական ձեռքը։

## ՑՈՒՐԱՑՎԵԼ Է ՆՈՐ ՊՐԵՊԱՐԱՏԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Եթե ձեր գլուխը ցավում է, ապա դուք օգտագործում եք այնպիսի փորձված դեղորայք, ինչպիսիք են՝ տրոյչատկան, պիրամիդոնը, ֆենացետինը, ասպիրինը... Ցավոք սրտի, այդ պրեպարատներից մի քանիսը, հանգստացնելով ցավը, անցանկալի ներգործություն են ունենում։ Այժմ մեր երկրի շատ գիտնական-դեղագործներ զբաղված են օրգանիզմի վրա վնասակար ազդեցություն չունեցող, ցավը հանգստացնող նոր դեղամիջոցներ ստեղծելու գործով։ Այդպիսի մի նոր դեղամիջոցի՝ ացետաֆոնի արտադրությունն է յուրացրել Մոսկվայի սալիցիլինի գործարանը։

Իր հատկություններով ացետաֆոնը նման է ֆենացետինին, սակայն այն ավելի ներգործող է և միաժամանակ իջեցնում է ջերմությունը, հանգստացնում ցավերը, կանխում բորբոքումները։ Այս դեղամիջոցի արդյունավետությունն ստուգված է կլինիկական պայմաններում, այնպիսի հիվանդությունների բուժման ժամանակ, ինչպիսիք են՝ նեվրալգիան, միգրենը, գրիպը, պոլիարտրիտը և այլն։

# ԲԱՑՎԱԾ Է

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

## ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

# 1963 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, արտասահմանյան կոմունիստական շարժման մասին։*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ**

Մեկ տարին — 3 ռ.

Վեց ամիսը — 1 ռ. 50 կ.

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**